Sebeos, Bishop of Bagratunik
Patmutiwn Sebeosi Episkoposi...

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## Ի ՀԵՐԱԿԼՆ

136

ԸՆԾԱՅԵԱԼ Ի ԼՈՅՍ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Տ. Տ. ՆԵՐՍԷՍ Ե.
ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ
ԵՒ
Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
Տ. ՅՈՎՀԱՆՆՈՒ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԵՒ
ՀՐԱՄԱՆԱՒ ՎԵՀԱՓԱՌ ՊԱՏՐԻԱՐՔԻ Կ. ՊՈԼՍՈՅ
Տ. ՅԱԿՈՎԲԱՅ ԱԶԳԱՍԷՐ ՍՐԲԱԶԱՆ
ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

239 p.

Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԻՒՀԷՆՏԻՍԵԱՆ
1851 — ՌՅԱ

Արդարև ո՛չ համարիմ չափազանց ջատագովլ՝ յորջորջել զՍա Մատեան Ոսկեղէն ազգային հընութեան վասն հայերենախօս ոճոյն. և արժան վարկանիմ զայս երկրորդ դասել յետ Քերթողահօրն ցանկալի դպրութե՛ վս՟ հնախօսութե՛ 'ի մասին Արձանագրութե՛, և վս՟ այլոց պատմութեանց՝ որոց մինն է նամակ Մովսէսու Երիցու առ Տ. Կոմիտաս Կաթուղիկոսն, և նորին դրութիւնն սքանչելի՝ առ Մովսէսոս Երէցն. զորս ընթերցասէրք չեն տեսեալ տակաւին 'ի գիրս այլոց պատմչաց. թող և ըստ մասին Քրոնիկոնին.

Արդ՝ ամենայն ինչ երկու և երիւք վկայիւք հաստատի ըստ Տեառն բանի. ապա ո՛րչափ ևս առաւել ստուգագոյն լինի յորժամ վկայն իցէ յօտար ազգաց. և նա՝ ո՛չ վասն շահասիրութեան և փառասիրութեան, այլ միայն պարզապէս կացեալ վկայ ճշմարտութեան՝ գրէ միայն զստուգութիւնն, որ տեսանի 'ի Մարաբբա փիլիսոփայն Մծուրնացի՝ որ եհան յարձանագրութենէն Ագաթանգեղեայ. որպէս վկայէ Սեբէոս:

Ահա եհաս ժամ ստուգութեան, արարեալն Խորենայ սուրբ հօրն մերոյ ո՛չ յայնմ աղբերէ, այլ յայլմէ գրութենէ և յայլ լեզուէ. բայց ըստ նիւթոյն և ըստ հայերենաւանդ ստուգութեանն ո՛չ մի ինչ պակաս՝ այլ առաւելագոյն քան զայն. զի զհրաշալի ասացուածս հաւոյն մերոյ Հայկայ ընդ Բելին բելիարայ, և զայլ բազում պատմական տեղեկութիւնս զարմանալիս նկարագրէ:

Արդ՝ ո՞ հայրենասէր ոգի՝ ո՞ ոք իցէ արդեօք՝ որ ո՛չ փղձկիցի 'ի սիրտ իւր, և ո՛չ յարտա-

տուս շարժիցի վասն Աստուածախօս լեզուին և աստուածապաշտ գործոց արիութեան մերոյս Հայկայ. վասն վիճման և խօսակցութեան ընդդէմ Բելայ:

Եւ արդ՝ Խորենացի հայրն մեր գրեալ էր 'ի Մարաբբայ Կատինայ 'ի Յունականն 'ի Քաղդէական լեզուէ թարգմանեալ գրութեանց. բայց մերս Սեբէոս յայլմէ աղբերէ հանեալ զաս՝ տայ ճաշակ ազգիս. ըստ որում պատմէ. «Անդ հաւաքելով 'ի մատեանն Մարաբբա փիլիսոփայի Մծուրնացւոյ՝ զոր եգիտ դրոշմեալ 'ի վերայ Արձանին... յապարանսն Սանատրուկ արքայի՝ հանդէպ դրան արքունական տաճարին. (որ հրամանաւ քաջին Տրդատայ արքային Հայոց՝ 'ի ձեռն Ագաթանգեղոսի արձանագրեալ էր Յունարէն գրութեամբ)..., զոր իմ գտեալ 'ի նորին աշակերտացն 'ի Միջագետս՝ կամեցայ ձեզ ցուցակարգել»:

Արդ՝ սոյն փիլիսոփայս հանեալ է յԱրձանագրութենէ ըստ գրեցելոյն, և հանդիպեալ Սեբէոսի 'ի Միջագետս աշակերտաց սոյն փիլիսոփայի՝ հեղեալ է 'ի մերս բարբառ 'ի Յունարէն կամ յԱսորւոց դպրութենէ:

Արդ՝ եթէ հայեսցուք 'ի Սեբէոս՝ յետ Խորենացւոյն իբր հարիւր քսան ամաց 'ի յայտ եկեալ է այս Արձանագրութիւն. որովհետեւ Սեբէոս էր յետ Խորենացւոյն իբր 140 ամաց, վասն զի գրէ Սեբէոս՝ «Ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն, քանզի զսիւնս տաճարին այնորիկ խնդրեալ 'ի դուռն արքային Պարսից... և բացեալ զաւերածն վասն սեանցն. և այլն»:

քէ վերաբերեցին զանուն պատմութեանս . քան
որում սա սկիզբն առնէ պատմութեան Հերակ-
լի . քան վկայութեանն Նոզիկայ « Պատմութիւ-
նըն Հերակլի որ 'ի Սեբէոսէ եպիսկոպոսէ ասա-
ցեալ » : Եւ թուի թէ՝ Վարդան սմա գիտեալ
իցէ . քան որում տեսանեմ 'ի պատմութեան նո-
րին բանք 'ի սմանէ առեալք . որպէս խօսեցեալ
եմք յերրորդ ծանօթութեան մերում :

Այժմ գտեալ է յայսմ դարու աղգասէր ան-
ձանց աշխատութիւնն , որպիսիք են , Հնախա-
սութիւնն Հ. Պ. Սուքիասու . Ճանապարհորդութիւն
Հ. Մինասայ . Ճանապարհորդութիւնն Սար-
գիս վարդապետի Ջալալեանց . և Ճանապար-
հորդութիւնն Ներսիսեայ Թագիադեանց . ա-
ռաւել ևս Շահխաթունեան Յովհաննէս եպիս-
կոպոսի Ստորագրութիւնն . ( հատոր Բ . երես 57 ) .
տես անդ 'ի Թագիդ՝ և յաղէսակին ձմերոցին Նա-
խավ առանց . որ 'ի նոյն աշխատասիրէ գտեալ
եղեւ , զի մինչեւ ցայժմ ոչ յումեքէ 'ի ժամա-
նակըւոց յիշատակեցաւ . եթէ իցեն և , չեւ է
հասեալ 'ի ձեռս մեր :

Սա սմին օրինակի են գործք Սեբէոսի որ 'ի
մասին Արձանագրութեանն . Սրբեօք մերովք հը-
նուէք գեռ ևս գան ծանօթեալք 'ի ներքոյ երկրի .
և կամ խաղաղ անհետացեալ անծանօթ 'ի մէնջ՝
և 'ի գրեանց մերոց անգամ : Եթէ նոքին ևս 'ի
յայտ գայցե՛ն այժմ . գուցէ անհաւատալի թը-
ւեսցի ամենեցուն , սակս սպառ սպուռ ջնջելոյ
նոցին . որպէս ականատես եղաք աղէտալի տե-
սարանացն . սակայն կարեն միջեալ տակաւին
հեւաք կործանեալ քաղաքաց՝ մերս հայկեանց .

որպիսիք են աւերակք Անւոյ՝ և Գառնւոյ, մանաւանդ՝ վանքն Գեղարդայ՝ որ դեռ կանգուն կայ. և վկայութիւնք նոցին են՝ աներկբայելի ։

Աւա՜ղ. լացցո՛ւք անմխիթար 'ի վերայ դըժբաղդութեան Հայաստան աշխարհիս. արդեօք ո՞րչափ եւս հնութիւնք և արձանագրութիւնք կան ծածկեալ 'ի ներքոյ երկրի 'ի բռնութենէ և 'ի կործանմանէ այլոց տիրապետութեանցն. որոց այսօր հետք անգամ չերևին. եթէ գտեալք իցեն եւս միայն ընթեռնումք 'ի մէջ պատմութեանց ։

Այլ այս եւս յայտ լիցի՝ զի գտաք զերկուս օրինակս. օրինակի միայն չգոյր յիշատակարան՝ և էր թերի. որ էր բոլոր գրով՝ հին թուղթ բամպակեայ. և թուի թէ 'ի վեշտասաներորդ դարու դրեալ իցէ. բայց ամենայն մասամբ մաքուր գըրութիւն 'ի հմուտ գրչէ. կայր եւս 'ի միջի նորին աղօթք հրաշազան յօրինուածով արարեալն սըրբոյն Յակովբայ Մծբնացւոյ վասն մահտարաժամի՝ զոր և օրինակեցաք. (եւ ունիմք 'ի ժամանակին 'ի լոյս ընծայել). և գոյր 'ի վերջն զայս յիշատակարան. « Արդ գրեցաւ ... թուին ռժէ. 'ի սուրբ և տիեզերական ուխտս Արմաշինոյ վանաց. ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի տէր Յուսիկ կոչեցելոյ ... և այլն »։ Եւ էր դրոշմեալ 'ի ճակատն « Պատմագիրք Սեբէոսի 'ի Հերակլն »։

Եւ 'ի միւս օրինակին՝ զոր արարաք մեզ բընագիր զոր ընկալեալն էաք 'ի սրբոյ Վեհէն որպէս տեսցի 'ի ստորև, որ էր գրեալ ռճիա թուոյն

՚ի Բաղէշ ՚ի Ս. Յովհաննու Կարապետի . ե-
ղեալ էր ՚ի վերջն յիշատակարան . զոր տեսցես
՚ի վախճան մատենիս . և ՚ի սկիզբն " Սեբէոս ե-
պիսկոպոսի ՚ի Հերակլն " : Բայց մեք եդաք
" Պատմութիւն Սեբէոսի եպսի ՚ի Հերակլն " :

Արդարեւ մնամք ՚ի տարակոյս . կամ ՚ի միջա-
դէպս հանդիպեալ Հերակլի կայսեր՝ թուի լի-
նել ըստ խնդրանաց նորին գրեալ զայն պատ-
մութիւն . և կամ սակս ընդարձակագոյնս գը-
րելոյ զպատմութիւն Հերակլի՝ նորին վասն ըն-
ծայէ նմա զանուն պատմութեանս : Նմին իրի
կամ ընկալեալ է յայլոց , և կամ ինքն եդեալ է
զայս անուն պատմութեանս : Բայց տեսցուք՝
զինչ յիշատակեն զմանէ պատմիչք մեր :

Առաջին՝ Ստեփաննոս Տարոնացի Ասողնիկ
կոչեցեալն , յիշէ զսա ՚ի չորս մատենագրաց ա-
սելով " Պատմութիւնն Հերակլի որ ՚ի Սեբէոսէ
եպիսկոպոսէ ասացեալ " :

Երկրորդ՝ ըստ պատմելոյ Կիրակոսի Գանձա-
կեցւոյ՝ որ ասէ " Հերակլ ՚ի Սեբէոսէ եպիսկո-
պոսէ ասացեալ " :

Երրորդ ՚ի Չամչեան պատմութեան յառա-
ջաբանութեան անդ՝ որ վասն անյայտ պատմագ-
րաց , ասէ " Հերակլ ՚ի Սեբէոսէ եպիսկոպոսէ " :
Եւ ՚ի պատմելն յեօթներորդ դարու վասն ժո-
ղովոյն Դունայ առ ժամանակօք Ներսիսի Կաթու-
ղիկոսի որ կոչեցաւ եւս շինող , յիշատակէ ՚ի
չորս եպիսկոպոսաց՝ զԵպս ոմն Սեբէոս անուն
ասելով " Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց "
սա է եպիսկոպոսն այն : Որովհետեւ Համխա-
թունեան Յոհաննէս եպիսկոպոսն՝ և ս՚իստորագ-

րութեան խուռամ. հատոր Ա. երես 285. գրէ այսպէս « Պատմաբանն Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց ժամանակակից եղբօր Ներսիսի Կամսարականի՝ յորոյ առ ուրս զասու և 'ի ժողովի անդ 'ի Դուինն քաղաքի »: Եւ հատոր Բ. երես 134. յիշէ զսա 'ի շարս պատմչաց՝ « Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց »:

Եւ Միքայէլ եպիսկոպոսն Սայրքանթեան՝ որ առ ժամանակօք մերովք աշխատասիրեալ է յառաջնել գոյացակ ազգի մերոյ, 'ի շարս՝ եօթներորդ դարու մատենագրաց յիշէ « Սեբէոս եպիսկոպոս պատմագիր »: Եւ մեք անշուշտ զսա նոյն դարու մատենագիր ճանաչեմք լինել վասն վսեմ հայկական շարադրածոյն և վասն հնախօսութեանն, որով՝ հետաքննող ցուցանի երանաշնորհ Թարգմանչաց մերոց: Բայց ողբալին այն է՝ զի մինչեւ ցայժմ ոչ եկաք դիպել սմա և ոչ՝ սոյնպիսի մատենագրութեանց Ըռզիսս ատ 'ի ծանօթ լինել սոյնպիսեաց:

Ահա մինն սա է՝, զոր պատմագիրս յիշէ 'ի քակիրջն Բ. դպրութեան՝ դասելով ընդ Խորենացւոյն « Աստեփաննոս Ճշգրիտ մատենագիր » ասելով. չգիտեմք զո՞ր Աստեփաննոսն ասէ. մի միայն մեք գիտեմք Ստեփաննոս Տարօնեցի Ասողնիկ կոչեցեալն 'ի սկիզբն մետասաններորդ դարու գրեալ զպատմութիւնն. բայց ոչ է Տարօնեցիս այս ոչ է մեզ ծանօթ. եթէ Ասողնիկն իցէ՝ ոչ լինի Սեբէոս յայնժամ եօթներորդ դարու. այլ լինի զօնէ երկոտասաններորդ դարու պատմիչ լեալ. բայց այս՝ ոչ հաւանական երեւի մեզ քան հայկական ճաշակին և քան հնախօսութեանն, որ

գիս. եթէ ներեսցեն՝ համարձակիմք ասել. զի համարս ունին տալ յաւուրն ահեղին վասն այնպիսի գործոյ:

Աւաղ նախնեացն մերոց աշխատանաց . . . :

Եւ արդ սոյն Մատեան տենչալի 'ի ձեռս իմ անկեալ 'ի 1850 ամի Փրկչին 'ի գնալն մերում 'ի Տփխիս յատուկ յանձնարարական գործով 'ի կողմանէ Յակոբ Արքազան Պատրիարք հօր մերոյ առ Վեհափառ Արքազան Կաթուղիկոսն ամենայն Հայոց Տ. Ներսէս Ե. և տեսեալ իմ զԱա առ նորին Վեհափառութեան որ օրինակեալն էր 'ի բնագրէն՝ որ 'ի սուրբ Էջմիածին՝ խնդրեցի. և Վեհափառութիւնն նորին շնորհեաց մեզ. և յետոյ 'ի գնալն մերում 'ի սուրբ Աթոռն՝ բաղդատեցաք ընդ բնագրին՝ յորում կայր 'ի մասին Քրոնիկոնին պակաս յերկուս տեղիս. առաջինն՝ գրեալ էր « չորս տող պակաս է » երկրորդին՝ « եօթն տող պակաս ». և տարբերութիւնք ինչ ժամանակաց. յայնժամ լցուցաք զթերին՝ 'ի միւս հնագոյն օրինակէն, և մեծաւ մասամբ հետեւեցաք նմին. ըստ Քրոնիկոնի մասին. և նշանակեցաք 'ի ստորև 'ի ծանօթութեան: Նոյնպէս որքան մարթ էր բաղդատել ընդ միմեանս և զտարբերութիւնս գործոց՝ որ յայլում տեղւոջն, զհաւաստին եդաք. և զոչ ախորժելին 'ի ստորեւս ծանուցաք, որքան գտանէին 'ի միւսում օրինակի անդ. զոր նշանակեալ եմք յիւրում տեղւոջն: Եւ համարձակեցաք անխիղճ մտօք զսխալանս գրչի՝ զայնոսիկ ևս նշանակելով:

Այլ միայն այսչափ փոփոխութիւնս մուծաք

առ 'ի լուսաւոր յարդարել զմատեանս , այսինքն յերիս դպրութիւնս բաժանեցաք զբովանդակ գործն ։

Առաջին՝ Արձանագրութիւնն Ագաթանգեղոսի . զորոյ ըստ պահանջման գործոյն հարկեցաք տալ զծանօթութիւն , և 'ի վերջն ծանօթութեան՝ յաւելաք յորդորակս ինչ , զոր աշխատասիրեալ ըստ տկար մտացս ։

Երկրորդ՝ Քրոնիկոնն համառօտ՝ զոր հաւաքէ 'ի Մովսէսէ Խորենացւոյ , և 'ի Ստեփաննոսէ Տարօնացւոյ . բայց գործս այս՝ է տարբեր յայլոց պատմչաց . որպէս ծանուցեալ եմք ։

Երրորդ՝ արարաք զբովանդակ յիւր ժամանակի եղեալ գործսն , զոր համառօտիւ պատմէ . որպէս ինքն վկայէ 'ի Նախերգանս իւր . « Զայս ամենայն կամեցայ 'ի ձեռն գրոյս այսորիկ կարճառօտ ձեզ վիպասանել »։

Եւ յաւելաք 'ի սկիզբն բ . և գ . դպրութե̃ գլխորագրութիւնն « Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի », բայց առաջին մասին անփոփոխ պահեցաք « 'ի Հերակլն » ասելով ։

Եւ թէպէտ էր 'ի բնագիրս գլխակարգութիւնք . բայց մեք 'ի պատշաճ տեղիս եդաք , հանդերձ ծանօթական տեղեկութեամբ , այսինքն բովանդակութեամբ 'ի ներքոյ պարունակեալ գործոցն . որպէս տեսցի 'ի ստորև 'ի ցուցակի ։

Եւ ոչ ամենևին փոփոխութիւնս մուծաք 'ի բառսն զսովորութիւն նախնեացն ամբողջ պահելով , այլ եդաք որպէս և էրն զերկիւղն՝ երկեւղ . զօրն՝ զաւր . զօրհնեալն՝ աւրհնեալ . և

այն ։ Թէպէտ էր 'ի մէջ սորին մոռացօնք գրե-չի 'ի տեղիս տեղիս 'ի բնագրի մերում, բայց մեք եղաք առ 'ի ամբողջ պահել զոճ նախնեա-ցըն մերոց, և զմիւս հնագոյն Թէրի օրինակին ։

Արդ՝ այն մատեան ցանկալի, որ է նշխար հայրենի հնուԹեն, 'ի պարծանս նախնեացն մերոց համարձակեցաք 'ի լոյս ընծայել վ՟ա ուսումնա-սիրաց ազգիս ․ Թէպէտ ոչ էր յոյս մեր այսքան, և ոչ վասն միայն այն գրուԹեան 'ի խնդիր ե-լեալ էր մեր 'ի հայրենի աշխարհն՝ բայց ․ ․ ․ բառ մասին բաւականացաք ։ Եւ շատացուք Թէ ընԹերցողք և Թէ մեք, և շնորհակալուԹիւնս մատուցուք Վեհափառ սուրբ հօր մերոյ, և Մայր ԱԹոռոյ սրբոյ Էջմիածնի․ զի եԹէ ոչ էին պա-հեալ յայնչափ ժամանակս 'ի յեղյեղմանէ բռնա-ւորաց և յայլ աղԹից կործանման՝ այժմ 'ի ձե-ռս մեր ոչ էր եկեալ ։ Դուցէ տեսեալ սորին հրատարակիլն և զխնդրեալ գրեանս մեր 'ի բէր և 'ի պարծանս ազգիս պարգեւեսցէ, որ 'ի ժա-մանակին գայցէ 'ի լոյս ․ որով փառաւորի Նո-րին ՎեհափառուԹեան անուանն Նոյն և բազ-մերախտ նախնեաց մերոց ։

Այլեւ անկողմնակէր ուղղով գրեմ զի Աստուա-ծային պատուիրանն է մնալ ճշմարտուԹեան և անխո-ռսուԹ պահել 'ի մեջ վերաբերեալս բարեկամին ․ ա-յլա մեջչափ և ս առաւել պատուիրումք երախ-տապարտ գտանել զմ̃ սուրբ ուխտիցն տաճա-կեաց նազրբ անձանց քան զամենայն երախտաւորս ազգիս ․ զի 'ի ձեռն սոցա պահպանեցաւ մինչև ցայժմ, ճշմարտուԹիւն կրօնի, ազգուԹի մեր, և լեզու, և գիտուԹիւն, և սոցա զպահեալ ա-

ւանդ նախնեացն մերոց՝ անարատ նուիրեցին յետնոցս ։

Արդ՝ տուեալ զսոյն ճաշակ հայրենի հնութեանց փափաքողաց ուսումնասիրաց ազգիս, եթէ սխալանք գտցին 'ի սմա, ներեսցե՛ն՝ զի այսչափ էր կար մեր. եթէ հաճոյ թուեսցի՝ մերըս դուզնաքեայ աշխատու՟ն փոխարէն՝ խնդրեմ յիշման արժանի առնել զիս և զծնողս իմ. որ և մնամ խոնարհաբար ծառայ

Թադէոս Միհրդատ.
Տ. Աստուածատուրեան
Միհրդատեանց.
(Ի Կ. Պօլիս. 'ի Սամաթիա)։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԳՈՐԾՈՅՍ

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Ա.

Արձանագրութիւն Ագաթանգեղեայ՝ որ է ազգաբանութիւն ազգիս. որ պարունակէ յինքեան համառօտիւ զպատմութիւնսն Պարթեւաց, և զհամբարձումն Արշակունեաց մինչեւ ցՏրդատ և ցորդիսն իւր, ծանօթութեամբ հանդերձ: երես 1:

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Բ.

Համառօտութիւն խորենացւոյն և Տարօնացւոյն, հանդերձ քրօնիկոնիւ՝ սկսեալ 'ի Թագաւորութենէն Արշակայ մինչեւ 'ի ժամանակս Յազկերտի՝ յոր վճարեցաւ Թագաւորութիւնն Արշակունեաց: երես 27:

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Գ.

Նախերգանք հեղինակին երրորդ դպրութեան: երես 42:

Նոյն իսկ՝ Սեբէոսի պատմութիւնն որ պարունակէ զգործս 'ի ժամանակի խռովում եղելոց՝ սկսեալ 'ի Վարդանանց մինչեւ 'ի ծագումն Հագարացւոց և 'ի Մաւիա ամիրապետ: երես 45:

# ՑԱՆԿ Գ. ԴՊՐՈՒԹԵԱՆ

## ԳԼՈՒԽ Ա.



## ԳԼՈՒԽ Բ.



## ԳԼՈՒԽ Գ.



## ԳԼՈՒԽ Դ.



## ԳԼՈՒԽ Ե.

## ԳԼՈՒԽ Զ.



## ԳԼՈՒԽ Է.



## ԳԼՈՒԽ Ը.



## ԳԼՈՒԽ Թ.



## ԳԼՈՒԽ Ժ.



## ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԳԼՈՒԽ ԺԲ.



## ԳԼՈՒԽ ԺԳ.



## ԳԼՈՒԽ ԺԴ.



## ԳԼՈՒԽ ԺԵ.



## ԳԼՈՒԽ ԺԶ.



## ԳԼՈՒԽ ԺԷ.

## ԳԼՈՒԽ ԻԴ.



## ԳԼՈՒԽ ԻԵ.



## ԳԼՈՒԽ ԻԶ.



## ԳԼՈՒԽ ԻԷ.

## ԳԼՈՒԽ ԻԸ.

Մարզպան լինել Վարազտիրոցի որդւոյ Սմբատայ. ընտրիլ կաթուղիկոս Քրիստափորայ և անկանիլն. յաջորդելն Եզրի. փախչանիլ Կաւատայ, և թագաւորել Արտաշրի որդւոյ նորա. գիր Հերակլի առ Խոսրով, և խնդրել զսուրբ խաչն 'ի նմանէ. սպանումն Արտաշրի՝ և թագաւորել Խոռեմայ. սպանումն Խոռեմայ՝ և թագաւորել Բօրոյ դստերն Խոսրովայ. յետ սորա Խոսրովայ ումեմն. և յետ սորա Ազարմիդուխտ դստեր Խոսրովայ. յետ սորա Որմզդի. ապա թագաւորել Յազկերտի: երես 153:

## ԳԼՈՒԽ ԻԹ.

Գալ Արքայ խաչին 'ի սուրբ Երուսաղէմ. որոշիլ սահման թագաւորացն երկոցունց. ընդունել Եզրի զժողովն Քաղկեդոնի յա-տիզմանէ Մժէժ Գնունւոյ. խորհուրդ Մժէժի ընդ Ռոստոմայ 'ի վերայ Վարազտիրոց Աշոտի. փախուստ Վարազտիրոցի. երդնուլ թագաւորին նմա՝ երթալն նորա 'ի պալատն և մեծարիլ. չար խորհուրդ Աթալարիկոսի ընդ իշխանաց 'ի վերայ հօրն. յայտնել խորհրդոյն և մահ նոցա. աքսոր Վարազտիրոցի. քաջութիւն Դաւթի Սահառունւոյ՝ և լինել Կիւրապաղատ. գործք Թէոդորոսի Ռշտունեաց տեառն: երես 157:

## ԳԼՈՒԽ Լ.

Բարձումն Սասանականին որ կալաւ զիշխանութիւնն ամս չխէ. և ծագումն Մահմէտի. և մուտ որդւոցն Իսմայէլի յաշխարհն Հայոց. մահ Երակլի՝ և թագաւորել Կոստանդեայ: երես 163:

## ԳԼՈՒԽ ԼԱ.

Վասն Հրէից և չար խորհրդոց նոցա: երես 173:

## ԳԼՈՒԽ ԼԲ.

Մեռանիլ Կոստանդնի գաւեալ 'ի մօրէն՝ և թագաւորել Երակլոնի որդւոյ երկրորդ կնոջն Երակլեայ. գալ 'ի Կոստանդնուպօլիս Վալենտինի զօրավարի և նստուցանել թագաւոր զԿոստաս զորդի Կոստանդնի. պատերազմ Պարսից ընդ Իսմայէլացիս և պարտիլ.

## ԳԼՈՒԽ ԼԳ․



## ԳԼՈՒԽ ԼԴ․



## ԳԼՈՒԽ ԼԵ․



## ԳԼՈՒԽ ԼԶ․



## ԳԼՈՒԽ ԼԷ․



## ԳԼՈՒԽ ԼԸ․

պատերազմ Իսմայելացւոց ընդ Յոյնս 'ի Նախճաւան . և կոտորէին զՅոյնս . և աւերէին զՀայաստան . մերժեալ 'ի բաց կալ Հայոց 'ի ծառայութենէ Իսմայելացւոց՝ և հնազանդիլ Յունաց . լինել կիւրապաղատ Համազասպայ Մամիկոնէից տեառն . վասն որոյ սպանանել Իսմայելաց զպատանդսն . անկանիլ խռովութիւն 'ի մէջ բանակին Իսմայէլի և պատառումն 'ի միմեանց . յաղթել ամենեցուն Մուաւիայայ իշխանին իւրեանց և թագաւորեալ՝ առնել ընդ ամենեսին խաղաղութիւն : Երես 232 :





Ի ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ

ՀՈԳՒՈՅ

ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԾՆՈՂԻՆ ԻՄՈՅ

Տ. ԱՍՏՈՒԱԾԱՏՐՈՅ ՊԱՀԱԼԱՅԻ

ԵՒ

ՄԻՀՐԴԱՏԱՅ ՋԱՐՄԻՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ
## Ի ՀԵՐԱԿԼՆ

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Ա*.

Եւ եղև ոչ 'ի կամայական պիտոյից վարժ խուզակի զանստարագրել ժամանակ (1). և զնախնի քաջացն ձեռնարկելով՝ դրոշմել վիպասանութիւն, զիմն յիշատակել զառասպելս, և 'ի նոյն շարագրելով ասացից զառ 'ի յապայն եղելոց, և ցուցից համառաւտիւք զարդեաց ժամանակայս զաղէտիցս վերաբերութեան զամս և զաւուրս հինգ Թագաւորացն յիշատակելով։

Ընդ հայելով 'ի մատեանն Մարաբբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ, զոր եգիտ դրոշմեալ 'ի վերայ արձանի 'ի Մծբին քաղաքի՝ յապարանսն Սանատրուկ արքայի հանդէպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն։

Քանզի զսիւնս տաճարին այնորիկ խնդրեալ 'ի դուռն արքային Պարսից, և բացեալ զաւե-

*Ի բնագրին էր ԳԼՈՒԽ Ա. բայց մեք եդաք ԴՊՐՈՒԹԻՒՆ Ա. ըստ բաժանման մերոյ յերիս դպրութիւնս։

բանն վասն սեանցն ըստ դիպան արձանագրին դրոշմեալ 'ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ թագաւորացն Հայոց՝ և Պարթևաց Յունարէն գրովք *. զոր իմ գտեալ 'ի Միջագետս՝ 'ի Նորին աշակերտացն, կամեցայ ձեզ զրուցակարգել. քանզի այսու ունէր վերնագիրն այսպէս։

ԵՍ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ ԳՐԻՉ ԳՐԵՑԻ Ի ՎԵՐԱՑ ԱՐՁԱՆԻՍ ԱՅՍՈՐԻԿ ԻՄՈՎ ՁԵՌԱՄԲՍ ԶԱՄՍ ԱՌԱՋԻՆ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ՀԱՅՈՑ, ՀՐԱՄԱՆԱՒ ՔԱՋԻՆ ՏՐԴԱՏԱՅ՝ ԱՌԵԱԼ Ի ԴԻՒԱՆԷ ԱՐՔՈՒՆԻ, ԶՈՐ ՓՈՔՐ ՄԻ ԵՒ ԱՊԱ ՅԻՒՐՈՒՄ ՏԵՂԻՈՋՆ ՏԵՍՑԵՍ ԶՊԱՏՃԷՆՆ։

« Բայց ես նախ առաջին զվէպս յաճեցին ար- քայ՝ և յարի այրն սկսայց ասել, նախ զնախ- նեացն պատմութիւնս՝ ուստի եղև սկիզբն ա- մենայն երկրի շինուածոց լռմանց. և անտի 'ի այն պատուաստելոյ յաւդել զրուցակարգութե վէպս հսկայազանցն՝ և զառասպելս ունայնս ան- հանճար զաւրայն. զոր 'ի մեծ երկանցն աշտարա- կին յղութիւն ծնանելով ցրէր ընդ մեծ անա- պատ անթիւ, որ 'ի կայս անլուրս ձայնից ան- դադար 'ի վերայ առն ընկերի առնոյր սուրն Տիտան. յորում առաջին թագաւորեաց 'ի վե- րայ երկրի։

» Նա Բէլն Տիտանեան 'ի վեր կարծէր զինքն քան զամենայն ազգս մարդկան՝ զիւրն ոչ ճանա- չելով զընութիւն, այլ զամենայն ազգս մարդ-

* Ի միւս օրինակէն եղաք « 'ի Միջագետս »։

կան 'ի ծառայութիւն իւր կոչէր։ Ապա յայնմ ժամանակի Հայկն Աբեթածին ոչ կամեցաւ հընազանդիլ 'ի ծառայութիւն Բելայ արքայի. արհամարհեաց զնա աստուած կոչել. անդ Բէլ 'ի վերայ Հայկին յարձակեալ մարտիւ։ Իսկ Հայկըն արի՝ աղեղամբ հալածեաց զնա։

„ Արդ՝ այս է Հայկն՝ որ ծնաւ Զարամանեակ զորդի իւր 'ի Բաբելոն։ Եւ ծնաւ Արամանեակ ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արամայիս։ Եւ ծնաւ Արամայիս ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Ամասիա։ Եւ ծնաւ Ամասիա ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Գեղամ։ Եւ ծնաւ Գեղամ ուստերս եւ դստերս բազումս, յորոց անդրանիկն Հարմա. Եւ ծնաւ Հարմա ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արամ։ Եւ ծնաւ Արամ ուստերս եւ դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արայն գեղեցիկ։

„ Արդ՝ այս են անուանք ազգածինն արանց անդրանդելոցն 'ի Բաբելոն (գնացելոցն)* ընդ կողմանս հիւսիսոյ յերկիրն Արարադայ, չուեաց խաղաց գնաց Հայկն 'ի Բաբիլոնէ կնաւն՝ եւ որդւովքն՝ եւ ամենայն աղխիւն հանդերձ։ Եւ չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ 'ի տանն որ 'ի լեռնոտինն որ զառաջինն շինեալ էր Զըրուանայ հաւրն՝ եւ եղբարքն հանդերձ։

„ Եւ ապա ետ զնա Հայկն կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրոյ որդւոյն

*Միւս օրինակն ոչ ունէր փակագծիւ եդեալ բառդ։

Արամանեկայ ։ Եւ ինքն չուեաց գնաց անտի եւ 'ի հիւսիսակողմն եւ շրջաւ բնակեցաւ 'ի բարձրաւանդ դաշտավայրի միոջ . եւ կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք , յանուն Հարցն ։

» Իսկ երկիրն ըստ նմին պատշաճի կոչեցաւ անուն Հայք՝ որ են հայազգամբք հանդերձ ։

» Եւ արդ՝ այս Հայկ հզաւր զաւրութեամբ եւ բարի անձամբ՝ եւ կորովի աղեղամբ՝ եւ մարտիկ յոյժ ։

» Յայնմ ժամանակի Թագաւորեաց 'ի Բաբելոն որսորդ հսկայ Բէլն Տիտանեան ձոխն չաստուածացեալ , որոյ հզաւր զաւրութեամբ եւ սաստիկ յոյժ գեղ պարանոցի իւրոյ ։ Եւ էր իշխան ամենայն ազգաց՝ որ սփռեցան 'ի վերայ երեսաց ամենայն երկրի , որոյ արարեալ առ աշաւք կախարդութեամբ հնարս՝ եւ հրամանս Թագաւորականս ամենայն ազգաց . եւ հպարտութեամբ ամբարտաւանութեան իւրոյ կանգնեաց զպատկերն իւր , եւ եա երկիրպագանել իբրեւ աստուծոյ , եւ զահս մատուցանել ։

» Եւ փաղփաղակի կատարէին ամենայն ազգքն զհրամանս նորա . բայց մի ոմն Հայկ անուն նահապետ ազգացն ոչ հնազանդեցաւ 'ի ծառայութ̃ի նորա , եւ ոչ կանգնէր 'ի տան իւրում զպատկեր նորա . եւ ոչ մեծարէր զնա ա̃ծաւրէն շքով (²) ։

» Եւ էր անուն նորա Հայկ , ընդ որում ծնաւարքայի Բէլայ ոխութիւն մեծ ։ Եւ զաւրաժողով լինի Բէլ արքայ 'ի Բաբելոն եւ դիմէ գնայ 'ի վերայ Հայկայ սպանանել զնա ։

» Գայ հասանէ յերկիրն Արարադայ 'ի տունն՝ որ էր նոցա հայրենի՝ զոր շինեալն էր 'ի լեռնա

տին. և Կադմոս փախստական գնաց 'ի Հարք առ հայր իւր աղդ առնել նմա. և ասէ — Դիմեալ գայ Բէլ որդւոյ 'ի վերայ քո, և եկն եհաս մինչև 'ի տուն անդր. և ես կնաւ իմով և որդւովք ահաւասիկ կամ՝ փախստական —:

» Առնու Հայկն Արամենակ և զԿադմոս զորդիս իւր. և զորդիս նոցա և զորդիս եւթանեցունց դստերաց իւրոց, արս հսկայս և նուազունս թուով:

» Եւ 'ի դիմի հարկանի Հայկն Բելայ որդւոյն. և ոչ կարաց զդէմ ունել բազմութեան արանց հսկայից սպառազինաց:

» Ընդ 'ի դիմի հարկանի Հայկն Բելայ, և կամեցաւ ըմբռնել զնա Բէլ 'ի բուռն իւր: Խոյս ետ Հայկն յերեսաց նորա, և գնայր նա փախըստական. և Բէլ զհետ նորա երթայր պնդագոյն հանդերձ զինակրաւն իւրով:

» Ատեղի կալաւ Հայկն, և ասէ ցնա. — Ա՜ֆ պնդեալ գաս զհետ իմ. դարձիր անդրէն 'ի տեղի քո՝ զի մի մեռանիցիս այսաւր 'ի ձեռաց իմոց. քանզի ո՛չ վրիպի նետ իմ իմիք —: Պատասխանի ետ Բէլ, և ասէ՝ — Վասն այնորիկ՝ զի մի անկցիս 'ի ձեռս մանկտւոյ իմոյ և մեռանիցիս. այլ եկ 'ի ձեռս իմ, և կեաց 'ի տան իմում խաղաղութեամբ, ունելով 'ի գործս զմանկունս 'ի տան իմոյ զօրականս —:

» Պատասխանի ետ նմա Հայկն և ասէ — Շո՛ւն ես դու՝ (3) և յերամակէ շանց՝ դու և ժողովուրդ քո: Եւ վասն այնորիկ թափեցից իսկ այսաւր 'ի քեզ զկապարճս իմ —: Եւ արքայն Տիտանեան սպառազինեալ, և վստահացեալ 'ի կուռ սպա-

ռազմութիւն անձին իւրոյ։

» Եւ Հայկն Աբեթայն մերձենայր և ունէր 'ի ձեռին իւրում զաղեղն, որպէս հեծան հզաւր մայրափայտեայ։ Եւ Հայկին զտեղի կալեալ պատրաստի ընդդէմ նորա աղեղամբ։

» Եւ կանգնէ զկապարճսն 'ի գետնոյ ընդ իւրեան յաղեղն սկսայաւրէն կամարին, և ընդ գիրկըս մտեալ զաւրութեամբ հարկանէ նետիւ ըզտախտակս երկաթիս, և ընդ պղնձի վահանն 'ի թափ անցուցանէ ընդ մսեղէն արձանն յերկիր խարսխեալ վարեալ նետն. և վաղվաղակի յերկիր կործանեալ զաստուածակարծեալ հսկայն. և զաւրքն նորա փախստական լինէին։ Եւ նոքա զհետ մտեալ թափեցին 'ի նոցանէ երամակս ձիոց և ջորեաց և ուղտուց։

» Եւ Հայկն դարձաւ 'ի տեղի իւր՝ և չոքաւ կալաւ Հայկն զերկիրն Արարադայ. և բնակեցաւ անդրէն ազգաւ իւրով մինչև ցայժմ։ Եւ 'ի ժամանակի մահուան իւրոյ ետ զնա կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում որդւոյ Արամանեկայ եղբաւր Հարմայի։

» Եւ Արամանեկայ հրամայեաց երթալ 'ի հիւսիսակողմն՝ ուր ինքն իսկ դադարեաց զառաջինն։ Եւ եղև յետ մահուանն Հայկայ՝ առ Արամենակ զորդիս իւր՝ և զդստերս իւր, և զարս նոցա, և զքորս եւթանեսին, և զարս նոցա, զուստերս և զդստերս նոցա և զամենայն աղխ իւր։ Եւ չոգաւ բնակեցաւ անդէն յառաջնումըն դաւառին, զոր կոչեցին յանուն Հարց իւրեանց Հարք։

» Ապա գնայ անտի ևս Արամանեակ 'ի հիւ-

տխրակողմն և երթեալ իջանէ յերկիր մի խորին դաշտավայր, որ կայ 'ի մէջ բարձրաբերձ լերանց. և հասանէ անցանէ ընդ մէջ նորա գետ յորդահոսան. որով անցեալ Արամենակ բնակէ անդ. և շինէ զերկիրն կալուած ժառանգութեան իւրոյ՝ զվայրն լեռնակողմն և զառաւայր:

¶ Զկնի Արամանեկայ՝ որդի նորա Արամայիս շինէ իւր 'ի վերայ գետեզերն տուն բնակութե՟, և անուանէ զանուն նորա ըստ անուան իւրոյ Արամայիր: Եւ որդիք նորա սկսան բազմանալ և լնուլ զերկիրն:

¶ Եւ շինեցին գաւառս. մեռաւ և Արամայիս, և կալաւ զերկիրն որդի նորա Ամասիա: Եւ ապա յետ նորա Գեղամ, Մեռաւ Գեղամ՝ և տիրեաց որդի նորա Հարմա: Ապա որդի նորա Արամ, Ապա որդի նորա Արայն գեղեցիկ, որով անուն իսկ դաշտին այնորիկ կոչեցաւ յանուն Այրարատ:

¶ Եւ Շամիրամ կինն Ասորւոց տիկնայն Նինոսի, քանզի լուաւ վասն գեղեցկութեան նորա և կամեցաւ առնել ընդ նմա բարեկամութիւն, որպէս զի կատարեսցէ զկամս նորա պոռնկութք. քանզի ըստ լրոյ համբաւոյ յոյժ տարփեալ էր 'ի վերայ անձին և գեղոյ նորա գեղեցկութեանն:

¶ Զի ոչ գտանէր յայնմ ժամանակի նմանն նմ այր ոք՝ ամենևին այր պատկերաձևս. յղէ առ նա հրեշտակս պատարագաւք և կոչէ զնա առ ինքն 'ի Նինուէ: Իսկ Արայն ոչ զպատարագն նորա ընկալաւ և ոչ յանձն առնու երթալ 'ի Նինուէ առ Շամիրամ. ապա առնու զզաւրսն իւր Շամիրամ, և գնայ 'ի վերայ նորա 'ի Հայս: Գայ հասանէ 'ի դաշտն Արայի, և տայ պատերազմ ընդ

Արայի, հարկանէ զզաւրն, և սպանանէ զԱրայ ՚ի պատերազմին։

» Եւ հրամայէ Շամիրամ տանել զդին նր ՚ի վերնատունն ապարանից իւրոց, և ասէ — Ես ասացից աստուածոց լիզուլ զվէրս նր և կենդանասցի —։

» Իսկ իբրև նեխեցաւ դին նորա ՚ի վերնատանն, հրամայեաց գաղտնի ընկենուլ ՚ի վիհ և ծածկել։ Եւ զարդարէ զմի զոմն ՚ի հոմանեաց իւրոց այր պատշաճող. և համբաւ հանէ զԱրայի լիզուլ աստուածոցն և յարուցանել։ Ունի ՚ի ծածուկ. և ոչ ումեք ՚ի ծանաւթից նորա ցուցանէ զնա. և այնպէս հանէ համբաւ Արալեզաց տիկինն Շամիրամ։

» Յայնժամ տիրեաց Շամիրամ ՚ի վերայ երկրին Հայաստանեայց, և յայնմհետէ Ասորեստանեայց թագաւորքն տիրեցին մինչև ցմեռանիլն Սենեքարիմայ (4), ապա ապստամբեցին յԱսորւոց թագաւորացն ծառայութենէ։

» Եւ տիրէ ՚ի վերայ նոցա Զարեհ որդի որդւոց Արամանեկայ, այր զաւրաւոր և կորովի աղեղամբ. ապա Արմոգ. ապա Սարհանգ. ապա Շաւաշ. ապա Փառնաւազ։

» Սա ծնաւ զԲագամ և զԲագարատ, և Բագարատ ծնաւ զԲիւրատ. և Բիւրատ ծնաւ զԱսպատ, և որդիքն Բագարատայ ժառանգեցին ըզ ժառանգութիւնս իւրեանց՝ ՚ի կողմանս արևմտից. այսինքն է Անգեղ տուն. վասն զի կոչեցաւ Բագարատ և Անգեղ, զոր ՚ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսացն աստուած կոչեցին։

» Այս Փառնաւազ հնազանդեալ Նաբուգոդոնոսորայ արքայի ՚ի Բաբելոն։ Եւ ապա յայնմ

Հետոյ Բաբելացւոց և Մարաց Թագաւորքն տի-
րեցին մինչև ցԱղեքսանդր Մակեդոնացի՝ որ զա-
մենայն տիեզերս հնազանդեցոյց ՚ի ծառայութի̃ ։
„ Եւ ծառայեցին Մակեդոնացւոց մինչև ցա-
պստամբութիւնն Պարթևաց և Մակեդոնացւոց,
և ցհամբարձումն Արշակունեաց Թագաւորու-
թեանն ։ Քանզի զայն ճառէ ժամանակագիրն՝
այդպէս, որպէս առաջիդ կայ ։

„ Ի Դամասկոսէ (*) ասեն գնացեալ զՄար-
սեակն զընդոծինն Աբրահամու փախստական լեալ
յԻսահակայ, և եկեալ բնակեցաւ առ ոտամբ
երկուց լերանցն որ հային հանդէպ մեծի դաշտին
Արայի, յԱրագած կատար և ՚ի Գեղ լեառն ։
„ *Եւ անուանէ զերկինս յանուն իւր. որում
Աղաւն կոչեն լեառն ։ Եւ լինին նորա երեք որ-
դիք, Փառոխ՝ նա է Եղխազար, և Փառոխտ կոչեն
զտեղի բնակութեանն. և Փառականն դաշտ որ-
սոց և արշաւանաց նոցին, որ խառնին յազգ
Արամանեկայ ։

## ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ ՊԱՐԹԵՒԱՑ ՈՐ ԵՂԵՒ Ի ՅԱՅՍ ԺԱՄԱՆԱԿԻ

„ Եւ եղև յետ մահուանն Աղեքսանդրի կայ-
սեր Մակեդոնացւոց, ծառայեցին Պարթևք Մա-
կեդոնացւոց ամս կա̃ ։ Քանզի Թագաւորեաց Սե-
լևկիոս Նիկանովր ՚ի Բաբիլոն ամս լը̃ ։ Անտիոքոս

* Ի միւսում օրինակի այդպէս. բայց մերս բնագիրն էր այսպէս.
« Եւ անուանէ զերկինս յանուն իւր, Եւ լինին նորա երեք որդիք.
Փառոխ՝ նա է Եղխազար. որում Աղաւն կոչեն լեառն ։ Եւ զՓառոխտ
կոչեն զտեղի բնակութեանն. և Փառականն դաշտ » և այլն ։

Սոսեր ամս ԺԹ ։ Անտիոքոս Թէոս ամս Ժ ։

« Եւ յամի մետասաներորդի Անտիոքայ արքայի ապստամբեալ 'ի բաց կացին Պարթեւք 'ի ծառայութենէ Մակեդոնացւոց ։ Եւ թագաւորեաց Արշակ մեծ որդի արքային Թէտալացւոց 'ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց, որում ամ̃ ազգք արեւելից եւ հիւսիսոյ հնազանդեցան 'ի ծառայութի̃ ։

« Չուեաց խաղաց գնաց Արշակ արքայն ամ̃ զաւրաւքն հանդերձ՝ յարեւելից երթալ 'ի Բաբելոն, յառաջին թագաւորացն կալուածսն. զի անդ հաստատեսցէ զթագաւորութիւն իւր. եկն եհաս 'ի Բաբելոն ։

« Իսկ Անտիոքոս իբրեւ ետես՝ զի անչափ բազմութիւն եկեալ հասեալ էր 'ի վե̃ նորա Արշակ արքայն Պարթեւաց, այնուհետեւ ոչ կարացեալ վստահանալ յիւր զաւրացն բազմութի̃ 'ի դիմի հարկանել վերադին* այնմիկ, եւ խոյս ետ յերեսաց նո̃. փախեաւ եւ գնաց յԱսիաստան ։ Եւ թագաւորէ 'ի վե̃ Ասիաստանու ամս Ե. եւ ապա մի ըստ միոջէ թագաւորեն Մակեդոնացիքն յԱսիաստան 'ի ժամանակս ինչ ։ Եւ Արշակ արքայ հնազանդեցոյց 'ի ծառայութի̃ զԱսորեստանեայս, որ ըստ Անտիոքայ. Եւ զԲաբելացիս եւ զՊարսիկս. եւ ըզ Մարս. եւ զերկիրն Հայոց մինչեւ ցլեառն մեծ Կապկոհ. եւ 'ի յեզր ծովուն մեծի արեւմտից. Թագաւորէ Արշակ 'ի Բաբելոն ամս բազումս ։

« Եւ եղեւ յամին հարիւր եւ տասներորդի չորրորդի Արշակայ արքայի Պարթեւաց. 'ի չորրորդում ամի թագաւորութեան Դեմետրեայ

* Ի միւսում օրինակի « վերջադին » ։

՚ի վերայ Ասիաստանի, և Ասորւոց. մինչև Արշակ արքայ գնաց յարևելս ։ Զաւրաժողով լեալ և Դեմետրիոս չոգաւ կալաւ զԲաբելոն ։

» Իբրև ետես Դեմետրիոս, զի այնչափ բազմութեամբ եկն եհաս ՚ի վերայ նորա Արշակ, տեղի ետ նմա և գնաց մինչև ցԱնտիոք. և անդ ճակատեցաւ ընդդէմ Արշակայ ՚ի պատերազմ ։ Այլ եղև պատերազմ մեծ առ Անտիոք քաղաքաւ. հարկանեն և սրբաջունջ առնեն զզաւրն Դեմետրեայ. և ձերբակալ առնեն զԴեմետրիոս. կապէ զնա Արշակ արքայ ոտիւք և ձեռաւք, և առնու գնայ յարևելս ՚ի Բահլ Շահաստան ։

» Իբրև ետես Անտիոքոս եղբայր Դեմետրեայ եթէ ըմբռնեցաւ Դեմետրիոս ՚ի ձեռս Արշակայ արքայի. ինքն թագաւորէ ՚ի վերայ Ասորւոց, և Ասիաստանի. զաւրաժողով լինի և գնայ ՚ի Բաբելոն ։ Զկնի տասն ամի ազդ լինի սորին՝ եթէ թագաւորեաց Անտիոքոս եղբայր Դեմետրեայ. և եկն ՚ի Բաբելոն ։

» Լուծանէ Արշակ զԴեմետրիոս զկնի տասն ամի. և արձակէ առ եղբայրն, որպէս զի խաւսեսցի ինչ առնել նմա. և Դեմետրիոս ոչ գնաց առ եղբայրն իւր ՚ի Բաբելոն, այլ յԱսիաստան անցանէ ։ Ապա խաղայ գնայ Արշակ ՚ի Բաբելոն երկքտասան բիւրովք ։

» Յամի հարիւրերորդի՝ քսաներորդի ութերորդի թագաւորութեան իւրոյ իբրև մաւտեցաւ ՚ի Բաբելոն, անկանի ՚ի վերայ նորա Անտիոքոս յանկարծակի. ՚ի ձմեռն* ժամանակի՝ ՚ի նեղ վայ-

*Ի միւս օրինակին գրեալ էր «՚ի ձեռն ժամանակի»։

րի. և ոչ կարէին զաւրել. ապաւէն զզաւրն. զաւր-
կանէին և ընկենուին զԱնտիոքոս 'ի խոնարհ և բա-
պանանէին. և ձերբակալ առնէին զՍելևեկիոս
զորդին Անտիոքայ. զոր ունէր առէ արքայ 'ի գը-
րանն իւրում Թագաւորին:

„ Յայնմ ժամանակի Թագաւորեցոյց Արշակ
զորդի իւր զԱրշակ փոքր կոչեցեալ 'ի վերայ աշ-
խարհին Հայոց 'ի Մծբին քաղաքի: Եւ զատու-
ցանէ նմա սահմանս զԱրաւտատն առ երկրաւն
Տաճկաց. և առ երկրաւն Ասորւոց: Եւ զԿապուտա-
կեայ առ Կիւլիկեաւ՝ մինչև ցեզր ծովուն մեծի
արևմտից. և ցհիւսիսոյ կողմանէ 'ի լեառն մեծ
Կովկաս, որ ձգի ընդ կողմանս արևելից. և ան-
ցանէ առ սահմանաւն առ ամուր աշխարհաւն
Մարաց. և հասանէ 'ի լեառն Զարասպ. և ան-
ցանէ առ նոր Շիրակ երկրաւն:

„ Եւ յուղարկէ զնա 'ի Մծբնայ ընդ յարև-
մուտս զաւրու մեծաւ ութանասուն հազարաց
սպառազինաց. և մեծամեծ իշխանաւք նախարա-
րաց հազարաց բիւրաւորաց, որում ոչ ոք կա-
րէր զդէմ ունել պատերազմաւ: Ամա. ընդ ա-
ռաջ (*) ելանէր Բագարատն փառաւորեան յորդ-
ւոցն Արամանեկայ նախարար մեծ հանդերձ զաւ-
րու: Մատուցանէ նմա պատարագ ոսկի և ար-
ծաթ. և զարդարէ զնա 'ի սնդր՝ և 'ի վակաս.
պսակէ զնա 'ի Թագ հայրենի. և նստուցանէ զնա
'ի վերայ ոսկիապատ ականակուռ գահոյիցն. և
տայ նմա զդուստր իւր 'ի կնութիւն:

„ Զսա՛ արար Արշակ արքայ ասպետ Հայաս-
տան երկրին, որ էր իշխան և հրամանատար՝ ամ
Թագաւորութեանն հրամանաց գլուխ, և հայր

արքայի, և եղբայր. որում ետ իշխանութիւն տէրութեանն այնորիկ։ Նա կոտորեաց զհնկայսն, որ զաւրաժողով եղեն 'ի վերայ նորա 'ի Միջագետս Ասորւոց։

» Եւ այս են իշխանք Պարթևաց. որք թագաւորեցինն զկնի Արշակայ հաւր իւրեանց 'ի Բահլ Շահաստան յերկիրն Քուշանաց. որդիք չորք տան լեալ Արշակայ արքայի Պարթեւաց. զառաջինն տան թագաւորեցոյց Թետալացւոց աշխարհին. զերկրորդն 'ի վերայ Կիլիկեցւոց. զերրորդն 'ի վերայ Պարթևաց. զչորրորդն 'ի Հայաստան աշխարհին։

» *Եւ լինին ամենայն ամք Արշակայ կենաց իւրոց ԾԼ. ամ. և թագաւորեաց ամս յիսուն և վեց։ Օգնի նորա թագաւորէ որդի նորա Արշակ 'ի վերայ Պարթևայ՝ 'ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց՝ ամս Հ։ Ապա որդի նորա Աշնաշ՝ ամս ԼԲ։ Ապա Արշէն՝ ամս ԻԲ։ Ապա Արշաւիր՝ ամս ԽԵ։ Ապա Արտաշէս՝ ամս ԼԴ։ Ապա Դարեհ՝ ամս Լ։ Ապա Արշակ ամս ԺԵ։ Ապա Արտաշիր՝ ամս ԽԴ։ Ապա Պերոզ ամս ԿԴ։ Ապա Վաղարշակ՝ ամս Ծ։ Ապա Արտաւան՝ ամս ԼԶ։ Ապա լինին ամենայն ամք Պարթևաց տէրութեանն ամք ՇՀԳ։

» Եւ այս են թագաւորք Արշակունիք որք թագաւորեցին Հայաստան երկրի զկնի Արշակայ մեծի։

Արդ՝ թագաւորէ Արշակ փոքր կոչեցեալ՝ յամի հարիւրերրորդի քսան և իններորդի թա-

---

* Ի միւսում օրինակի այսպէս. բայց մերս բնագրի այսպէս։ "Եւ լինին ամենայն ամք Արշակայ թագաւորութեանն ԾԼ. ամ»։

գաւառութեն Արշակայ հաւր իւրոյ՝ ՚ի վր Հայաստան երկրի՝ ՚ի Մծուրին քաղաքի եղբարբ իւրով Վաղարշակաւ՝ զոր Թագաւորեցոյց Հայաստան աշխարհին՝ ամս խբ ։ Ապա Արշակ՝ ամս ժգ ։ Ապա Արտաշէս՝ ամս իե ։ Ապա Արտաւան՝ և Արշաւիր, ամս ժբ ։ Ապա Արշակ որդի Արշաւրի՝ ամս լէ ։ Ապա Երուանդ որդի Արշակայ՝ ամս իա ։ Ապա Արտաշէս եղբայր նորին՝ ամս ծբ ։ Ապա Տիրան որդի Արտաշէսի՝ ամս իբ ։ Ապա Տիգրան եղբայր նորին ամս խբ* ։ Ապա Արշամ՝ ամս ի ։ Ապա Աբգար որդի Արշամայ ամս լը ։ Ապա Սանատրուկ քեռորդի Աբգարու՝ ամս լ ։ Ապա Արտաշէս որդի Սանատրկայ ամս խա** ։ Ապա Արտաւազդ, և Ապա Տիգրան որդիք Արտաշիսի՝ ամս իդ*** ։ Ապա Վաղարշ որդի Տիգրանայ ամս ի ։ Ապա քաջն Խոսրով որդի Վաղարշու՝ ամս իը ։ Ապա մեծն Տրդատէս որդի Խոսրովայ ամս ծզ (?) ։ ) ապա Խոսրով որդի Տրդատայ՝ ամս թ ։ Տիրան որդի Խոսրովայ՝ ամս խը ։ Արշակ որդի Տիրանայ ամս է ։ Շապուհ արքայ Պարսից՝ ամս հդ ։ Պապ որդի Արշակայ՝ ամս է )**** ։

---

* Այս պարտ է լինել Արտաւազդ որդի Տիգրանայ որ Թագաւորեցոյց ՚ի կենդանութեան իւրում ։

** Զկնի սխալ է դնել Երուանդ որ Թագաւորեաց ամս ի ։

*** Թուերն լինելն քրոնիկոնիս բացայայտ երևի. որպէս խառնակունեցաք ՚ի ծանօթութեան զինելոյ ինչ ինչ Թերութեանց՝ յորոց և սա մին ։ վասն զի զկնի Արտաւազդայ և Տիրանայ՝ եդեալ է Վաղարշ որդի Տիգրանայ ։ Որպէս հարկ է դնել յառաջ քան զՎաղարշ՝ Տիգրան որ էր կրտսեր որդի Արտաշէսի՝ որ Թագաւորեաց ամս իբ ։

**** Ի բնագիրս մեր ՚ի վերջ արձանագրութեանս գրեալ էր փակագծիւ « Ն Քրիստոսի Ծնդաւորին ժամա յաւիտեանս ամէն » ։ Բայց ոչ գոյր ՚ի միւսում օրինակի ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ

(1) “Զանազանագրել ժամանակ”։
Ծան”. Յորժ հաւանական երեւի լինել “Զանազանագրեալ կամ զայն տառագրեալ կամ զայն տառագրել ժամանակ”։ Բայց լաւ եւս ա-նել “Չան տառապգրել”։

(2) “Որ ոչ մեծարէք զնա աստուածաւրէն շքով”։
Ծան”. Արդ՝ թէպէտ ՚ի սմանէ յայտ է վկայութիւն զԱստուած-պաշտութենէ նախնեացն մերոց, բայց եւս աւս ՚ի Հնախօսութ Հ. Ղուկասու Ինճիճեան բազմարդիւն վարդապետի՝ հատոր Գ. երես. 150. վասն կրօնի Հայաստանեայց որ ըստ իւրում կարի ըստ առեալ ծանօթութեան՝ որ ՚ի գրոց նախնեաց, աշխատասիրեալ է առ ՚ի ցուցանել զԱստուածպաշտութիւն Հաւուցն մերոց, սակայն ոչ բաւական առ ՚ի յաջեցուցանել. եթէ գիտեալ էր սոյնպիսի ըստուար մատենից՝ առաւել եւս պանծալի հանդիսանայր անշուշտ աշխատասիրութիւն նորին, այլ յորժամ հետ զհետէ ՚ի լոյս ընծա-յեսցին սոյնպիսի ըստուար մատեանք՝ կարէ ցանկացողն հեղինա-կութեան՝ բազմօք յաջեցուցանել զայդ իւր։

Ահա յայտնի տպացոյց մեզ. զի Աղաթանգեղոս առեալ ՚ի դիւանէ արքունի՝ արձանագրէ սակս կրօնի Աստուածպաշտութեան Նախահաւուցն մերոց, զոր ՚ի նմանէ առեալ տայ մեզ զանեղեկութի Սեբէոս։ Բայց ՚ի սմանէ եւ այլ հաւաստի պատմիչք մեր եւ եւս օ-տարազգի մատենագիրք վկայեն. որպէս Վարդան Բարձրբերդցի եւ Մխիթարն Գօշ մերազան զնմանէ հաւաստեն թէ. “Միայն չ՚կա-մելով Հայկայ պաշտել զպատկեր Բէլայ՝ ապստամբեաց ՚ի նմանէ. եւ կենդանի եղեւ նմա”։ Ընթերցցին եւ զպատմագրութիւն օտա-րազգեացն, որոց մինն է Միխայէլ Ասորի. զի ասէ նա զմերոյն Հայ-կայ. “Այլ մեք տեսանեմք յետ ժամանակի ապանանիլ նմա (Բէլայ) ՚ի Հայկայ. զի ոչ արար Հայկն զպատկեր Բէլայ. եւ ոչ համարեցաւ զնա աստուած եւայլն. իսկ յաւուրս Կորդոսի Արա-եան Հայք զաւակին կռապաշտեցան տարրապաշտութեամբ, զոր Զրադաշտ մոգ վանեալ զՀամիրամ եւ զԿարդոս՝ ընդ բռնակալութ եմայծ ՚ի Հայաստան. զայս եւ զհաւաստութիւն տուեալ մակդիրն Անուշաւանայ. որ Սօսանուէրն կոչէր, զի նախնի Հայք պաշտէին (ասէ) զսօսի ծառ եւ նուիրէին նմա զԱրին քաջազանց”. զի մերս Մագիստրոս. “Սօսեաց նուիրէին, ասէ, եւ կենդանի զոհէին”։

Ի պատմութիւնս սոցին գոյ նիւթ ինչ հետաքրքրական. զի տառ ցուցանի չերմեռանդութիւն Աստուածպաշտութեան ազգին.

որովհետեւ անպական ուրեմն քան զամենայն եմուտ յազգս մեր եւ տարածեցաւ խաւարն կռամոլութեան. ըստ որում 'ի Հայկայ սկըսեալ մինչեւ ցկարգս եւ յԱնուշաւան՝ ըստ ժամանակագրաց հաշուի իբր 650 ամ՝ յորում ոչ տեսաւ 'ի Հայ ազգիս կռապաշտութիւն, այլ Աստուածպաշտութեան շարունակութիւն, որ ոչ 'ի յայլ ազգըս երեւէր յայնմ ժամանակի։

Զայս ճշմարտութիւն փաստ եւ պարծանս համարեալ Ագաթանգեղեան գրոհիս՝ պանծալով շարագրեմ զայս բան, որպէս եւ յետոյ Քրիստոնէական կրօնիս զառաջինն միշտամուխ գտանիմք լինել զաշխարհս Հայոց. զի Աբգար Թագաւորն Արշամեան առանց տեսանելոյ զՔրիստոս եւ զնորին աստուածահրաշ սքանչելիսն՝ լինի հաւատացեալ, եւ ըստ աւետարանական բանին՝ յառաջ քան զամ՝ «երանին» ընդունի. որպէս եւ մեք նովին յուսով պարծեալ մնամք միշտ։

Յաւացուածոցս յայանի երեւի թէ տարրապաշտութեան ազգիս պատճառ ոչ եթէ իւրն չարութիւն եւ անտեղեկութիւն եղեւ, այլ տիրապետութիւն այլոց ազգաց կռամոլից. որպէս յորժամ տիրեաց Շամիրամ՝ հաւանեցոյց խաբէական հնարիւք զլիզուն զաստուածոց զդին Արայի եւ կենդանանալ. որում միամտութեամբ հաւատոս ընծայեալ՝ եւ անփորձ 'ի նորայլուր ձայնն լինելով հնազանդեցան ընդ իշխանութեամբ Շամիրամայ. եւ լցոյց զփափագ Նինոսի առն իւրոյ՝ առնլով յազգէս մերմէ զվրէժ Բելայ նախահաւոյն իւրոյ, որ 'ի ծառայութիւն իւր կոչէր զնահապետն մեր Հայկ. որպէս յայտ է 'ի պատմութենէս։ Արդ եւ բացան ճանապարհք դիւրութեան Զրադաշտին մոգու առ 'ի մոլորեցուցանել զՀայս։

Որպէս ընդ ժամանակս ժամանակս եղեալ են այսպիսի անցք յազգի մերում, եւ այժմ եւս տեսանի պատրիլ պարզամտաց ազգիս խաբէութեամբ օտար ազգաց՝ եւ գահավիժիլ 'ի մոլութիւն կորստեան. զի 'ի ժամանակս Շամիրամայ ընդ կրօնին եւ ազատութիւնն Հայոց խանգարեցաւ՝ որ մինչեւ ցայն վայր ամբողջ շարունակէր։ Տես զայսմանէ ընդարձակագոյնս 'ի Յորդորակս մեր. թէպէտ խոստացաք 'ի յառաջաբանին յետկոյս ծանօթութեան դնել՝ բայց վասն ընդարձակութեան գործոյն՝ հաճեցաք առանձին տետրակաւ հրատարակել։

Եւ 'ի ցուցումն Աստուածպաշտութեանն ազգիս՝ Արայի ողջախոհութիւնն եւ Աստուածպաշտութիւնն եղեւ, զի ոչ հաւանեցաւ ընդ Շամիրամայ. որ պահեաց զանձն իւր վասն առաքինութեան ամբողջութեան. թէպէտ գոն յազգս օտարս մեռանիլ՝ այն վասն հայրենեաց. կամ ազգասիրութեան. բայց մերոյս Արայի ընդ մարմնոյ եւ հոգւոյն գեղեցկացելոյ պատճառ զոհելոյ զկեանս՝ եղեւ պահ-

պանութիւնն Աստուածպաշտական աւանդութեանց։ Թող թէ ու-նէին աւանդութիւն նախահաւրն մերոյ Հայկայ. այսինքն « կամ մեռանել քաջութեամբ, կամ ապրել արիութեամբ 'ի վերայ հայ-րենեաց » ըստ խորենացւոյն. երես 24։ Նոյն ոգին ոգւով առաջի-նըն եղև Արայ նահատակելով 'ի պատերազմի վասն հայրենեաց։

Արդ՝ յայտնանէ հետևի թէ որպէս Աստուածպաշտութիւնն՝ նոյնպէս և լեզուն մնաց անփոփոխ յԱդամայ և 'ի Նոյէ սկսեալ. որով հետև 'ի Հայրենի տանէն ոչ հեռացաւ ազգ մեր՝ որ է Արարատ-եան դաշտ և լեառն՝ առաջին բնակութիւն մարդկայինս սեռի. և ոչ ընդ այլոց ազգաց խառնակեցաւ. թէպէտ Հայկ ընդ Հակոյա-զանցն չուեաց 'ի Բաբելոնէ 'ի շինութիւն աշտարակին, բայց յետ խառնակութեն լեզուացն ոչ եկաց անդ, այլ դարձաւ յառաջին նըս-տեանն բնակութեն զարմովք և որդւովքն. և այնպէս Աստուածպաշ-տութեամբ և լեզուաւ անխառն մնաց 'ի հայրենի խանձարուրս. յորմէ մինչև ցայժմ շարունակի ազգ մեր ըստ պահպանութեն նոյ։

Աւասիկ 'ի վերայ թէ, ոչ երևիւր յայլ ազգիս Աստուածպաշ-տութիւն յայնմ ժամանակի։ Թէպէտ՝ վասն Աստուածպաշտութեան՝ որ յԱբրահամէ սկսեալ, խօսեցեալ են Հ. Ղուկասն Ինճիճեան, և Հ. Միքայէլն Չամչեան՝ և այլք բազումք. սակայն ըստ բաւա-կանին պարտ յանձին վարկանելով մեք ըստ կարի տամք զտեղեկու-թիւն. որպէս ապացուցեալք 'ի վերայ զԱստուածպաշտութիւն մերոյս նախահարց։ Բայց ողբասցուք և մեք ընդ խորենացւոյն զանիմաս-տասէր բարս առաջնոց հարցն մերոց՝ և վասն ցրուեալ գրեանցն մերոց նախնեացն՝ որոյ վասն կարճին լեզուք մեր։ Ի վերայ այսր ա-մենայնի՝ փոքր ինչ եւս ցուցցուք վասն Աստուածպաշտութեան և ա-ւանդութեան ազգիս՝ տուեալ 'ի գրոց մերոց, յորոց ահա մինն է 'ի գլխաւոր մատենագրաց ազգիս իբր վկայ հաստատուն մեծն Վար-դան՝ որ 'ի գովեստ սուրբ Լուսաւորչին բացարձակապէս գրէ. « Ո՛չ պաշտեաց (Հայկ) ընդ եօթանասուն և միանահապետս երկրի զպատ-կերն Բելայ, այլ խրախուսեալ յԱստուած՝ սատակեաց զնոյն իսկ զկենդանին (Բէլ) զառաջնորդն կռապաշտութեան »։ Ի սմանէ հետևի՝ թէ բաց 'ի Հայկայ ցրուեալքն 'ի Սենեար բոլորովին կռ-ապաշտեցան. բայց իբր վկայ ճշմարտին Աստուծոյ եկաց նահապե-տըն մեր Հայկ. ընդ որում և որդիքն իւր։

Եւ արդ՝ կանխագէտն Աստուած՝ որ ոչ տայ զփառս իւր այ-լոց, գիտելով թէ որդիքն Արայի գաւաճանութեամբ Շամիրամայ ունէին լինել զհետ աստուծոց օտարաց՝ արժան դատեցաւ ծանու-ցանել զծանօթութի Աստուածութե իւրոյ. Աբրահամու հօրն հաւա-տոյ՝ 'ի ժամանակս Արայի՝ կոչելով զնա 'ի Հայրենի երկրէն և ա-նելով Հայր ժողովրդոցն Աստուծոյ. որովհետև ըստ ժամանակա-գրաց՝ Աբրահամ և Արայ ժամանակակից են միմեանց. տես 'ի գիրս

Եւսեբեայ, Խորենացւոյ, Թովմայ Արծրունւոյ. Սամուէլ երիցու՝ և այլոց բազմաց։ Ըստ որում ոչ կամի զի Ճշմարիտ Աստուածածանօթութիւն իւր սպառասպառ ընջեսցի յերեսաց երկրի. վասն որոյ յատարանաւ միայն՝ կոչեաց զՄիւսն. որպէս 'ի ժամանակս Ջրհեղեղաց յորժամ խառնակէին որդիքն Աստուծոյ ընդ դստերս մարդկան. ընտրեաց զարդարն Նոյ, և ապրեցոյց 'ի ջրասաստ պատժոյն որդւովքն իւրովք՝ զի մի անհետասցի ազգ մարդկան յերեսաց աշխարհի. Նոյնպէս 'ի բազմանալ կռապաշտութեանց՝ ընտրեաց և պահեաց զԱբրահամ 'ի միոյ Ճշմարիտ դաւանութեան իւրոյ. որպէս էր մինչև յայն ժամանակս ազգ մեր՝ Ճշմարիտ լուսովն լուսաւորեալ միոյ արարչագործ ամենակարողին։ Յայտնանէ զինչ զայ՝ թէ ոչ է անհնարին ընջեալ կամ սպառեալ երբէք յերեսաց երկրի Աստուածածանօթութիւնն Ճշմարիտ. բայց բազմաստուածութիւնն միշտ է եղծանելի և եղծեալ. սակայն որովհետև ոչ են անեղեալ արարքն մատենագիրք պատմագրութեանց ազգիս մերում, վասն այնորիկ անհետացեալ կարծեն զԱստուածպաշտութիւնն յերկրէ՝ և սկիզբն առեալ յԱբրահամէ, միայն ակներևութեամբ Սուրբ Գրոց խօսելով։ Բայց ոչ այնպէս. այլ էր 'ի Հայրենիս մեր 'ի Հայաստան երկրի Աստուածգիտութիւն, 'ի Նոյէ և 'ի Հայկայ մինչև 'ի ժամանակս Արայի, որ իբր հազար ամ ըստ ժամանակագրաց։ Թէպէտ 'ի Սուրբ Գիրս զայսմանէ ոչ տայ զծանօթութիւն Մովսէսն. ըստ որում միայն նպատակ գրութեան նորին էր պատմել զԱստուածագործ սքանչելիսն, և ոչ զպատմութիւնս Հայոց. եթէ էր ընկալեալ զանեղծութիւն զազգէս մերմէ՝ կարէր ծանուցանել սակաւիկ մի 'ի գիրս իւր. այլ որովհետև միայն եգիպտական դպրութ. էր վարժեալ ըստ դաստիարակութեան եգիպտացի փիլիսոփայից. և ազգաբանութեան ազգին իւրոյ էր քաջ խելամուտ՝ վասն որոյ միայն զնախնիս ասանդութիւնս և զակամատես սքանչելիսն պատմէ և ոչ զայլոց. որպէս և այժմ, որք իւրեանց պատմագրութեանց հմուտք են, միայն զիւրեանցն հաւաստեան ճանաչեն, և ոչ այլոցն. վասն որոյ և պախարակեն, անտեղեակ գոլով օտարացն աւանդութեան. եթէ լեալ էին խելամուտ պատմութեանց Ազգիս քաջ հաւատային, որք վասն անգիտութեան այժմ ժխտեն ամենք։

(3) "Ըուն ես դու . . . և ժողովուրդ քո"։

Ցան". Ըստ որում գրէ մեծն Վարդան 'ի պատմութեան, "Բայց Բէլ հպարտացեալ ասէ . . . հնազանդեցոյց զամենայն իշխանս՝ որպէս Աստուծոյ, և ապա արձակեաց զնոսա բաց 'ի Հայկայ, որ ոչ պաշտեաց զնա իբրև զԱստուած, այլ և շուն զնա կոչեաց. և ոչ կամեցաւ ընդ բռնաւորութեամբ Ներրովթայ լինել"։ Եւս եթէ ասա գրեալ է Վարդանն։

(4) « Մինչև ցմեռանիլն Սենեքարիմայ »։

Ծան". Այս Թուի լինել 'ի Շամիրամայ մինչև ցՍենեքարիմ Ասորւոց՝ հպատակութիւնն կամ հարկատու լինելն Հայոց. որովհետև՝ զկնի յարէ, "Սոքա ապստամբեցին յԱսորւոց ծառայութենէ »։ Աստ խօսի զթագաւորութենէ Հայոց՝ որոյ սկիզբն է 'ի Պարոյրայ, և անընդմիջաբար յարէ զկնի ասելով. " Եւ տիրէ 'ի վերայ նոցա Զարեհ՝ որդի որդւոցն Արամանեկայ »։

Արդ՝ ըստ Խորենացւոյն Զարեհն է Ներսեհեան և Արաւենեան. Խոր. լա. 60 էջէս։ Չգիտեմք ով իցէ Զարեհս այս, եթէ իցէ Ներսեհեանն, սա անընդմիջաբար պատմէ ապստամբիլն Հայոց 'ի յԱսորւոց տէրութենէ։ Արդ՝ մնամք 'ի տարակոյս. զի սա յիշէ զկնի Զարեհի զԱրմոգ, զՍարհանգ, զՇաւաշ, և զՓառնաւազ. և յետ Փառնաւազի պատմէ զքանի ինչ նահապետս ազգիս. և ապա յարէ ըզկնի ասելով. "Այս Փառնաւազ հնազանդեալ Նաբուգոդոնոսորայ արքայի 'ի Բաբելոնի »։ »

Եթէ լինիցի սա յիշեալն 'ի Խորենացւոյն, լինի որդի Հրաչեայ. բայց 'ի ժամանակս Փառնաւազի որդւոյն Հրաչեայ՝ չէին Հայքն հնազանդեալք Ասորւոց։ Եթէ ասեմք վասն առաջին Փառնաւազի՝ սա Ասորեստանեայց Ոփրատան թագաւորին ժամանակն է եկեալ. յամի աշխարհի 4360. ըստ եօթանասնից։ Եթէ որդի Հրաչեայ իցէ, սա 'ի ժամանակս Ասորդանայ է եկեալ. և Նաբուգոդոնոսոր է զկնի 100. ամաց։ Արդ ապա մնամք 'ի տարակոյս. զի 'ի ժամանակս Նաբուգոդոնոսորայ Հայկակն Բ. գիտեմք լինել ըստ Չամչեան. և ըստ Խորենացւոյն՝ զՀրաչեայն. գոյ տարակոյս 'ի մէջ պատմչաց վասն ժամանակաց և անուանց. բայց մի ոք տարակուսեսցի. զի գործըն է մի և նոյն, այլ միայն է անունն և ժամանակն տարբեր. սակայն ինչ և իցէ, ստուգութեան է պատճառ գործն։

Այլ Փառնաւազս այս՝ Թուի լինել զկնի Սենեքարիմայ, և կամ զկնի Ասորդանայ. տես 'ի Խոր. և 'ի ժամանակագրութեան Չամչեան. յէջէս. 32. 33։ Արդ՝ եթէ Զարեհս այս է յիշեալն 'ի Խորենացւոյն. սա ոչ 'ի ժամանակս Նաբուգոդոնոսորայ, այլ 'ի ժամանակս Արտաշիսի Գ. ի երկայնաձեռն անուանելոյ. և Ցոլադէի քահանայապետութեանն է. և 'ի ժամանակս նոյն ոչ գոյր Ասորեստանեայց թագաւորութիւնն։ Եւ 'ի միջի երկոցունց թագաւորացս՝ գոյ միջոց իբրև 170. ամաց. և սա ոչ երբէք լինել հաւանական. և յարէ զկնի, "Եւ ապա յանձնեալ Բաբելացւոց և Մարաց թագաւորքն տիրեցին մինչև ցԱղեքսանդր Մակեդոնացի »։

Արդ՝ եթէ Փառնաւազ հնազանդեալ իցէ Նաբուգոդոնոսորայ, յետ Նաբուգոդոնոսորայ մինչև ցԱղեքսանդր գոյ միջոց իբր 300 ամաց. և յայնժամ լինի ընդդէմ պատմչաց ճշմարտապատում ծանուցելոց ազգիս. բայց գոյ ստուգութիւն, այլ կարծեմք լինել

անուան և ժամանակի տարբերութիւն. բայց ոչ զանց առնեմք խոստովանիլ թէ պակաս իցէ 'ի տեղւոջես, զուցէ վասն չգտանելոյ ասնիլ Արձանին բոլոր գործքն պզգաբանութե, համառօտիւ անցանէ 'ի գրելն յարձանի. միայն զառաջին զնահապետսն յիշելով բաւական համարի այսու կերպիւ ստորագրել. բայց յետոյ անկանիմք ինչ խօսել` զորմէ տես յերկրակայսութեն ծանօթութեա վասն սոյն մասին:

Եթէ Ձարեհս այս իցէ ստոյգ ըստ Խորենացւոյն, զոր ոչ կարծեմք լինել. ուր է Արայեանն Արայ, և Անուշաւանն, և Պարեան մինչև ցՁարմայր, զորմէ տես 'ի Խորէ". 42. 43: Եւ կամ ուր գիցուք յետ Ձարմայրի Պարոյրն, և Հրաչեայն. և մինչև յԵրուանդ և ցՏիգրան` որք զաշխարհ գողացուցին. թող զպատերազմն Տրովայ. և թող զայնոսիկ` որք հետ զհետէ յաջորդեցին մինչև ցՎահէ. և զպարտութիւնն Վահէի, և զմահ նորին յԱղէքսանդրէ մակեդոնացւոյ. տես Խոր". յէրէ" 60:

(Ե) "Ի Դամասկոսէ առեն գնացեալ զՄարտակն զընդոծինն Աբրահամու փախստական լեալ յԻսահակայ":

Ծան". Ահա ազգային հնութեան գիւտ` որ լինի պատճառ հետաքրքրութեան քննչաց ազգիս. զի Խորենացի հայրն մեր ասէ, "Յետ մեռանելոյն Սարայի առեալ Աբրահամու կին զՔետուրա` յորմէ ծնան Եմրան և եղբարք նորա` զոր Աբրահամ 'ի կենդանութեանն իւրում մեկնեաց յԻսահակայ արձակելով յերկիրն Արևելից. յորոց սերեալ ազգ Պարթևաց":

Արդ` տեսանի միաձայնութիւն ոչ սակաւ. վասն զի նա` "Մեկնեաց 'ի կենդանութեանն իւրում յԻսահակայ" ասէ. և սա "փախըստական լեալ յԻսահակայ": Եւ որ այլոր զկնի բանք` են առաւել բացայայտ թուի լինել սորայս. զի նա միայն զերթ նոցա յԱրևելս, և Պարթևաց 'ի նոցանէ սերիլն յիշէ. բայց սա ուր բնակիլն նոցա յԱրևելս` և անուանադրութիւնս ինչ, և յոր ազգ խառնիլն գրէ: Եւ ըստ այսմ` ընդոծինն բնակի ըստ Ագաթանգեղեայ առ ստամբ երկուց լերանցն` որ է Արագած կատար, և Գեղ լեառն: Եւ անուանէ զլերինս յանուն իւր "Ազատ": Հաւանական թուի թէ լեառս այս 'ի հնոց անուանէր "Ազատ", որ այժմ կոչի "Դւին", ըստ լեզուին Պարսից, որ նշանակէ բլուր ըստ Խորենացւոյն: Ըստ որում և լերինք հայրենեաց մերոց ունին սեպհական անուանս զոր յատկացուցին նախնիք մ.ր` ըստ իւրեանցն անուանց. նոյնպէս և սա անշուշտ: Որովհետև բառս Դւին ոչինչ նշանակէ ըստ հայկական մերս բարբառոյ, և մանաւանդ Ազատ գետն անցանէ զստորոտովն Դւնայ, որ է Ջուրն Գառնւոյ որ պարտէր կոչիլ, գետ Գառնւոյ. բայց սակայն զատուգագոյնն ընկալաք յայսմ պատմութենէս` զոր Ազատ կոչէ զլեառն Դւին: Իցէ թէ, վասն կոչելոյ զլեառն Արարատոյ մականուանութեամբ Ազատ, որ համբէկ է սորին. նմին իրի

տոհմորութեամբ բաղձեալ և անհետ եղեալ է այս անուն. սակայն տեղին յայտնի ցուցանէ և պատճառքն յափշտակեն զմիտս մեր, զի ըստ պատմելոյ սորին՝ լեառն Դուրին՝ հայի յԱրագած կատար և 'ի Գեղ լեառն, և է հանդէպ մեծի դաշտին Արայի զոր տեսի գրե-չըս: Այս լեառն՝ ըստ Խորենացւոյն անուանի բլուր, որպէս և է իսկ. բայց ըստ Ագաթանգեղեայ Արձանագրութեան կոչի Ազատ. վասն զի՝ ոչ է զօտեօրեալ ընդ այլ լերինս. և՞ յիրաւի միայնակ արձա-նացեալ “Ազատ”: Եւ մինչև ցարդ առանց պատճառի կոչեն զգե-տըն որ մերձ առ ստորոտով սորին “Ազատ գետ”. գուցէ վասն ան-ցանելոյ ըստորոտով սորին ստեղծականեալ է յինքեան զայս անուն. որովհետև ոչ գտանի այլ պատճառ 'ի մատենագիրս մեր մինչև ցայ-ժըմ, թէ վասն էր կոչի գետս այս Ազատ, զի է ջուր Գառնւոյ, և մինչև յայն տեղին կոչի գետ Գառնւոյ, և 'ի մերձենալն յայս լեառն առանձնայ զանուն Ազատ. ապա գուշակի թէ այսմ լեռնէս ըն-կալեալ է զայս մականուն: Տես և “Մասեակ” անուանն՝ և “Եղիա-զար” որդի սորին 'ի գիրս Ծննդոց. ԺԵ. 2: Եւ 'ի Ցասուկ Բա-ռարանի յերես 140: Եւ “Ընդածինն՝” 'ի Հասարակ Բառարա-նի. յերես 772:

Սակայն գոյ տարբերութիւն 'ի վերայ փառոխ անուան. զի Խորենացին 'ի փառոխ նահապետէ եդեալ տայ այսր անուան. իսկ սա՝ յորդւոյն Մասեկայ: Կարէ լինել զի միոյ մարդոյ թէ ա-նուանն՝ թէ զտեղի բնակութեանն. յորժամ տիրեացեն այլք անդր՝ կամ բնակեցին, ստեղծականեն ինքեանց. կամ տայցեն իւր մականուն, որպէս երևի 'ի սորին վերայ՝ որոյ անուանն տայ լինել “Եղիազար”: Եւ կամ պատահի երբեմն կոչել միոյ անուան 'ի վե-րայ բազմաց, որում պատահեալ պատմիչք այլ ընդ այլս պատմեն տակս անուանցն համաձայնութեան:

Ի շարագրուած բանիս գտանին հետազօտութեան նիւթք. բայց բաւական լիցի, եթէ այս և եթէ այն՝ ստուգութեան են պատճառ և ոչ ստութեան. զի Խորենացի հայրն մեր տայ. “Ի Քետուրական ծննդոց ծագեալ ազգն Պարթևական”. և սա, “Ի Մասեակ Ընդա-ծըննեն Աբրահամու”: Գուցէ թէ այսու աղագաւ “ասէն” բայխ-անցանէ Ագաթանգեղոսին ոչ ցրելոյ զայլ աւանդութի Արգիս, բայց յայժ հաւանական թուի սորին ասացուածն, ըստ որում Խորենացի հայրն մեր ոչ խառնէ յազգս ինչ, բայց սա խառնեալ տայ 'ի Մաս-եկեան ծննդոց յազգս Արամանեկայ. թուի լինել 'ի Մասեկեան ծը-նընդոց ստեղծեալ և գաղթեալ 'ի Ղահաստան՝ կամ յաւաշ և կամ յետ Վահէի պարտութեան. և անտի 'ի վեր երևեալ ազգն Պարթև-ական: Եւս առաւել աւանդութիւնս այս ստուգագոյն երևի:

Այսու աղագաւ կարէ լինել Արշակայ և Վաղարշակայ տիրելն Հայաստանի՝ վասն արեանառու լինելոյն և խառնելոյն յազգ Արա-

մանեկայ ։ Եթէ չէր եղեալ այսպիսի հարազատ ազգակցութիւն՝ անտարակոյս եմք՝ թէ ո՛չ ընդունէին ինքեանց թագաւոր, և ո՛չ հաւատային զաշխարհս իւրեանց, և ո՛չ երբէք հնազանդեալ ընդ նորին ձեռամբ հպատակէին, որպէս յայտ է 'ի պատմագրաց. զի բաց 'ի հնազանդութենէ ո՛չ երբէք լուեալ եմք պատերազմ ինչ արիւնհեղութեան ընդ մէջ Հայկազանց՝ և ընդ մէջ Պարթևազանց. 'ի սկզբան ծագման նոցին՝ և 'ի սկզբան տիրապետութեան ։ Այլ ընդ հակառակն սորին՝ յորժամ կամէին տիրապետել ազգք օտարք 'ի վերայ իւրեանց, ընթեռնումք եթէ բազում արիւնհեղութիւն և ընդդիմութիւն եղեալ է 'ի Հայս, բայց 'ի տիրելն Արշակայ 'ի վերայ Հայաստանի ո՛չ այնպէս. մանաւանդ 'ի նուաճելն Արշակայ զայլ թագաւորութիւնս բազում կատորածս առնէր ։

Ապա անշուշտ թուի լինել արեանառու և ազգակից. Թէպէտ էին նախարարութիւնք և իշխանք Հայոց 'ի տիրապետելն Պարթեւազանց տէրութեան, որպէս Արտաշաս և Արտաւազդ՝ ըստ Չամչեան պատմութեան, բայց 'ի վերայ այսր ամենայնի սիրով և յօժարութեամբ ընկալան 'ի վերայ իւրեանց Տէր և Թագաւոր, և ձեռնտու եղեն նոցա առ 'ի կործանել զԹագաւորութիւնս այլոց, որպէս յայտ է 'ի պատմութեան Խորենացւոյ՝ յերես 72. որ ասէ վասն Բագարատայ իշխանին՝ (զորմէ ունիմք ասել 'ի ստորև. առ 'ի վեցերորդ ծանօթութեան)։ "Նախ և առաջին փոխարէն բարեաց հատուցանելով զօրավարին Բագարատայ եւ մեծամեծ պատիւ՝ որ նախաձեռն ընծայ մատոյց զհինգն Վաղարշակայ յառաջ քան զպատերազմն Արշակայ ընդ Մակեդոնացիսն"։ Բայց յայտնանէ և 'ի ցեղէն Հայկայ եղեալ նախարարութեանց արար պատիւ, և կարգեաց նախարարս 'ի վերայ գործոց աշխարհին. եթէ լինէր օտարական և ո՛չ արեանառու՝ ո՛չ հաւատայր նոցա զգործս աշխարհին՝ և զգուշանայր. թո՛ղ թէ Հայք և Պարսիկք ընդ միմեանս ունէին յառաջնումն զսէր և զմիաբանութիւն, և 'ի ցուցումն սորին քաջին Վահէ շահատակի 'ի ձեռն զօրացն Մակեդոնացւոց՝ 'ի դիմակայելն ընդդէմ Աղէքսանդրի՝ առ 'ի պաշտպանել զԴարեհ արքայն Պարսից ։

(6) "Սմա ընդ առաջ ելանէր Բագարատն փառաւորեան յորդւոցն Արամանեկայ"։ Ցան". Արդ՝ նոր իմն լսէր հետաքրքրուն, որով հետև մեք գիտեմք միայն Բագարատն յազգէ Շամբատայ Հրէի՝ ըստ Խոր". և ըստ Չամչ". յերես 208։ Բայց Սա ասէ, "փառաւորեան յորդւոցն Արամանեկայ"։ Գուցէ թէ այսպիսի աւանդութիւն լեալ է ազգին Բագրատունեաց ։

Եւ յարէ, "Եւ զդուստր իւր 'ի կնութիւն, և զորդւորեաց 'ի Թագ հայրենի՝ և նստոյց 'ի գահոյիցն"։ Եթէ սա իցէ պատմեալն 'ի Խորենացւոյն, նա ո՛չ եւս զդուստրն իւր 'ի կնութիւն,

և ոչ գիմաւորաց 'ի գալն Վաղարշակայ. բայց Սա «Դիմաւորաց (ասէ) պատասարագօղ Արշակայ»:

Եթէ ոչ էր եղեալ ազգակցութիւն և խնամութիւն. ոչ գիմաւորէր. և ոչ զդուստր իւր տայր 'ի կնութիւն. բաց յայսցանէ ոչ տանոյր յանձն Արշակ, եթէ լինէր Հրեայ՝ և ոչ ազգակից. մեք մի միայն գիտեմք լինել Թագաւոր հրամանաւ Վաղարշակայ և ոչ Արշակայ. բայց Խորենացին ասէ, «Եղբօր իւրում Արշակայ էր նախարար՝ այնու աղագաւ արար Թագաւոր և Արքայի երկրորդ»: Բայց սա եւ սա ասել հաւանական թուի՝ թէ խնամեալ է յազգաց Պարթևաց և կամ Արշակունեաց. եթէ չէր այսպէս՝ ոչ տանէր Թագաւոր Վաղարշակ. Թող զայն՝ զի յառաջ էր Արշակ եղբայրն Վաղարշակայ իբր 30. ամաւ, վասն այնորիկ կամ խնամեցին յազգս իւրեանց՝ և կամ յազգս Հայկազանց, եւս այն պատիւ. մանաւանդ ազգակցութեանն էր գործ՝ զի 'ի գիմաւորելն բազմեցուցանէ 'ի գահ՝ զարդարեալ 'ի պսակ՝ 'ի վակաս՝ և ոսկեղ, և ըզդուստրն տայցէ 'ի կնութիւն:

Բայց լինի՞ք զի Բագարատ այս՝ լեալ այլ ոմն. և ոչ յիշեալն 'ի Խորենացւոյն. ապա յայն բաց յարմարութեան պատմութեանս յայտ նմանութիւն բերէ ընդ Խորենացւոյն. վասն զի գործն և եղելութիւնն 'ի մի և 'ի նոյն ժամանակս է. հաւանական երևի՝ եթէ յիշեալն այն Բագարատ 'ի Խորենացւոյն՝ լեալ խնամեալ յազգ Աբրահամեանց կամ արեւմտեան. եթէ չէր եղեալ այսպիսի հարազատ խնամութիւն՝ ոչ տանէր այսքան պատիւ, և ոչ Ագաթանգեղոս այնպիսի մեծարէր. նա յայսմ մասին ծանօթութիւն 'ի վերայ այսպիսի գործոյն կայցէ. և յետոյ տիրելն Պարթևազանց 'ի վերայ Հայաստանի՝ որ համեմատ գայ սորին:

Ես գուցէ այսու աղագաւ եղեալ է յետոյ յազգն Բագրատունեաց թագաւորութիւն. այսինքն վասն լինելոյ Բագրատունեաց արեւմտեան և ազգակից, կամ 'ի ցեղէն Հայկազանց՝ և կամ յետոյ Արշակունեաց. եթէ չէր եղեալ այսպիսի հարազատութիւն ազգս Հայկազանց՝ ոչ տանէր Արշակ զխնամութիւն, և Բագարատ լինէր հայր Արքայի. և ապա Վաղարշակ ոչ տանէր Թագաւորի և երկրորդ տէրութեանն, և յետոյ ոչ տանէին Հայք իւրեանց թագաւոր զԲագրատունիսն, և հնազանդէին:

Այն սա ասելք հաւանական և ստուգագոյն երևի պատճառ՝ Բագրատունեաց ցեղէն թագաւորելոյ՝ յայնմ ժամանակէ ազնուականութեամբ և նախպատուութեամբ եկեալ մինչեւ 'ի ժամանակս թագաւորութեան ցեղին Բագրատունեաց. թէպէտ Խորենացի հայրն մեր մերժէ Հայկայ ցեղէն առնել զԲագրատունիսն, բայց թուի մեզ եթէ խնայեալ է այն ստուգութիւնն՝ որոյ առաջին ժամանակս յառաջ գրեալ է Ագաթանգեղոս. ապա յայն ոչ է հանդիպեալ

ուրուք գրութեան. այս եւս պատճառ է տառադրութեան գործոյն, վասն զի մինչեւ 'ի ժամանակս Խորենացւոյն գոյ եղեալ այսպիսի աւանդութիւն. որոյ վասն յիշէ երանելին Ագաթանգեղոս առեալ 'ի դիւանէ եւ կամ յաւանդութենէ նախնեացն մերոց, եւ գրեալ 'ի վերայ Արձանի. որ 'ի նմանէ հանեալ պատմէ մեզ Մարաբբաս փիլիսոփայս Մծուրնացի, յորմէ Մեքենաս այս պատմագիր:

(7) Ի վերջ արձանագրութեանն Ագաթանգեղեայ երեւի ինչ տարակուսական՝ զի Ագաթանգեղոս հրամանաւ Տրդատայ աշխարհ քանդակէ 'ի վէմս զազգաբանութիւն ազգիս, որ հարկ է. լինել մինչեւ 'ի ժամանակս Տրդատայ, բայց տեսանեմք զի անցեալ են յարձանագրութիւնն քանի ինչ անուանք. այսինքն Խոսրովու՝ որ է որդի Տրդատայ. այլ Տիրանայ. այլ Արշակայ. եւ այլ Պապայ՝ որդւոյ Արշակայ. ուրեմն անտարակոյս եմք, թէ կամ որդիքն եւ թոռունքն Տրդատայ զանուանս իւրեանց եւ որդւոցն շարունակաբար անցուցեալ են յարձանագրութեն, կամ թէ Մծուրնացի փիլիսոփայն յետ գտանելոյ զարձանագրութիւնն անցուցեալ է 'ի գիր շարունակելով մինչ 'ի ժամանակս իւր զորդիսն եւ զթոռունսն Տրդատայ. զի գան այսպիսի 'ի պատմիչս. որպէս երեւի 'ի Սամուէլ երիցու Քրոնիկոնն. որ յետագոյնք յաւելեալ են 'ի գիրս նորա, զոր ոչ էր նա 'ի ժամանակս իւր գրեալ. այսպէս եւ 'ի մասին արձանագրութեանս, որպէս եւ յայտ առնէ գրուածս՝ զի 'ի միւս օրինակին յետ Տրդատայ փակագծիւ էր եդեալ, եւ մեք նոյնպէս եդաք: Բայց այս եւս կարծի թէ՝ 'ի ժամանակս Պապայ դեռ կանգուն կայր այն արձանն, ընդ նմին եւ պալատն Սանատրկոյ. առ կայն յետոյ կործանեալ ունի լինել յարշաւանացն Հայոց 'ի միջագետս. եւ այլն:

## ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

## ՎԵՐՈՑԻՇԵԱԼ ԾԱՆՕԹՈՒԹԵԱՆՑ

### Ամենայն ինչ՝ որ է գաղտնի և երևելի, պարզ է հաստատիլ հաստատական նարծեօք:

ա. Արդ՝ թերի լինիլ թուի 'ի սկզբան պատմութեանս 'ի մասին Արձանագրութեան, կամ 'ի Յոյն բնագրէ, եւ կամ եթէ կատարեալ իցէ եւս՝ 'ի ձեռս մեր ոչ է հասեալ անթերին:

բ. Երեւի՝ թէ չէր տեսեալ Ագաթանգեղոս զպատմութիւնն Մարաբբայի Կատինացւոյ՝ որ 'ի վերայ նախնեացն մերոց. այլ կամ 'ի յաւանդութենէ գտեալ եւ կամ յայլում աղբերէ հանեալ 'ի դիւանէ՝ այնպէս արձանագրեալ է 'ի վերայ վիմի. այլ թէ ոչ՝ ըստ օրինակի այլոց պատմչաց ազգիս մերոյ, զօրօրինակ Մովսէս Խորենացին, եւ Յովհաննէս կաթուղիկոսն առնուն 'ի Հայ-

կայ մինչև 'ի ժամանակս իւրեանց իշխանին շարունակելով. և Սա ևս ըստ նոյին օրինակի շարունակէր զազգաբանութիւն նախնեաց մերոց ։

Գ. Եւ դարձեալ՝ որովհետև էր Հռովմայեցի Ագաթանգեղոս, ազգասիրութեան ոգւով առ 'ի չդնելոյ նախատինս 'ի վերայ ազգին իւր՝ զպարտութիւն նախնեացն իւրոց, որ 'ի Հայոցն քաջաց, զանց առնէ. որպէս զպատերազմն Տրդատայ, որ զաշխարհն գաղղացւոց, և զպատերազմն երկրորդ Տիգրանայ քաջ Թագաւորին Հայոց՝ որ ընդդէմ Հռովմայեցւոց ։

Արդարև քաջ գիտէր զայսոսիկ երանելին, որովհետև յարքունիս Տրդատայ էր քարտուղար՝ և մարդ հայկական դպրութե. որպէս մինչև ցայսօր սքանչելի գրութիւն նորա երևի 'ի մեզ. բայց միայն որում ականատես եղև և ականջալուր զնոյն վիպագրէ ։

Դ. Զի՞ աշխատ եղէց. և ընդէ՞ր 'ի քերթան մտից 'ի զուր. զի պատմագիրս այս որքան զատանէ յարձանագրութեան ազգ., այնքան տայ մեզ զծանօթութիւն, զոր շարունակ պատմէ յիւրում մատենին. արդարև բովանդակն համաձայն է Սա պատմութեան Խորենացւոյ սուրբ Հօրն. և հանդերձեալ է լինել պատճառ ստուգութեան բովանդակ ամբողջութեան ազգիս. Թէպէտ և ո՛չ այնքան յաջողեցուցանէ 'ի սկզբան ազգաբանութեան, բայց յոյժ կողմանէ բազում հնութիւնս յայտ առնէ. բայց գոյ ինչ ինչ պակաս և տարբերութիւն 'ի Խորենացւոյն բանից՝ որպիսի է տարբերութիւնն և պակասութիւնն 'ի Քրոնիկոնին Արշակունեաց՝ զորոյ տուեալ եմք զտեղեկութիւն ։ Վերջ բանիս՝ եթէ ո՛չ էր եղեալ տարբերութիւն և պակաս գործոյս՝ յայնժամ ո՛չ լինէր սա ազնիւ հնութիւն և ստուգութեան պատճառ Խորենացւոյն բանից. եթէ լինէր սա համեմատ բովանդակին Խորենացւոյն, յայնժամ ասէին ընթերցողք՝ թէ առեալ 'ի Խորենացւոյն աղբերէ Սեբէոս՝ և այսպէս համառօտիւ պատմեալ. բայց ո՛չ այնպէս ։ Եթէ Խորենացի սուրբ հայրն մեր պատահեալ էր արձանագրութեանս այսմիկ՝ անշուշտ յայտ առնէր պատմելով մի առ մի 'ի գիրս իւր. որպէս զբազում պատմագրութիւնս և դիւանագրութիւնս հաւաքեալ աշխատասիրեաց 'ի յօրինելն զպատմութիւն ազգիս, և աւաղէ վասն պատմութեան Դիոդորայ Սիկիլիացւոյ, զի ո՛չ կարաց 'ի ձեռս բերել. արդարև աներկբայ գիտեմք՝ թէ չէ դիպեալ արձանագրութեանս այսմիկ ։ Որովհետև ըստ վկայելոյ պատմագրիս, "ծածկեալ էր (ասէ) յարքունական կայենիցն" ։

Եւ գիտելով զայս մեր Սեբէոս՝ թէ ո՛չ գոյ ամենևին յիշատակ սորին 'ի գիրս այլոց պատմչաց՝ մանաւանդ ազգիս, նմին իրի իբրև զհազուագիւտ պանծալի ճաշակ նուիրէ յիշատակաւորաց ազգիս. զմեզ տեղեակս առնելով վարուց դիւցազանցն նահապետաց

մերոց՝ այն համառօտ արձանագրութեամբ՟. և պատմագիրս վասն համառօտութեան սորին՝ ոչ համարի բաւական շարունակել զպատմութիւն իւր սկսեալ 'ի կատարած ծայրէ սորին, այլ ասէ, «Երկբորդեցից՝ 'ի պատմագրութեանց Մովսիսի Խորենացւոյ և Ստեփաննոսի Տարօնացւոյ»:

Սակայն որքան և համառօտ իցէ ազգաբանութիւնս այս, է ազնիւ գիւտ ինչ հնութեան և յիշատակ յաւերժական՝ զոր թողեալ ազգիս Թորգոմեան, գիտաւորութեամբ ցուցանելոյ զվկայութիւն յարտաքին հնութեանց. ոչ յիշելով անուանս զազգաբանութիւնս Մովսիսի Խորենացւոյ՝ զոր 'ի տեղի նորին բաւական համարէ. զի արտաքին իւրոց և այլոց ազգացն վկայութիւնք՝ առաւել ապացուցանեն զիւրին ստուգութիւն. մանաւանդ եթէ համաձայն իցէ այլոցն վկայութեանց՝ որպէս սա Խորենացւոյն բանից:

Արդ՝ բաւական համարելով զայս՝ ոչ կրկնէ այլ ևս շարակարգել զազգաբանութիւն. միայն զայլ գործս քաղելով 'ի Խորենացւոյն և 'ի Տարօնացւոյն՝ շարունակէ. և որում ինքն եղև ականատես և ականջալուր՝ ընդարձակագոյնս պատմէ, և ըստ որում արձանագրութիւնն գրոշմեալ ունի յինքեան՝ համառօտ կերպիւ մինչեւ ցծագումն Պարթևազանց, վասն որոյ 'ի ցեղէն Պարթևաց սկըսանի շարունակել ասելով, «Ցետ մահուանն Աղեքսանդրու», և զթերին լցուցանէ 'ի Մովսիսի և 'ի Ստեփաննոսի մատենիցն: Բայց է ուրեք զի տարբեր կերպիւ, թէ ըստ պատմութեան, և թէ ըստ ժամանակագրութեան. թուի լինել տարբերութիւնս այս 'ի Ստեփաննոսի մատենիցն հանեալ. և գուցէ 'ի յայտ գայցէ 'ի ժամանակին հարազատ օրինակն:

Այս ևս յայտ լիցի՝ զի այս է գիտաւորութիւն և փափագ մատենագրիս՝ ըստ որում կամի միայն զչյիշատակեալսն այլոց պատմչաց՝ վիպասանել, և զգրեալսն յայլոց համառօտիւ անցանել. որպէս զպատմութիւն Վարդանանց պատերազմին կարճ 'ի կարճոյ առաջադրէ ասելով. «Այն ամենայն յայլոց գրեցաւ»: Արդ՝ ոչ փոքր հաւատարմութիւն ստանի քան զԽորենացին 'ի պատմիչս յայս. որովհետև զլուեալսն յայլմէ ևս նշանակէ, յասելն անդ. երես 172. «Զայս լուաք յարանց գերելոց . . . . որոց ինքեանք իսկ ականատես եղեալ պատմեցին մեզ»:

Այս ուրեմն մի երկբայեսցուք՝ յորժամ տեսանեմք 'ի տեղիս տեղիս կրճատ համառօտագրութիւն զանցից եղելոցն. ահա՛ շատ լիցի 'ի մեզ՝ զծածկեալսն յայտ առնել և զգանձատիրացն տարակոյս լուծանել. զայլսն թողումք քննչաց ազգիս:

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

*Արդ՝ Թէ պիտոյ է քեզ ով ընթերցասէր, երկրորդեցից 'ի Պատմագրացն Մովսիսի Խորենացւոյ՝ և Ստեփաննոսի Տարաւնացւոյ հաւատոյ և ճշմարիտ Պատմագրաց՝ զորդի 'ի հաւրէ ճանաչել։*

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Բ*.

Յետ մահուանն Աղէքսանդրու՝ թագաւորէ Արշակ քաջ 'ի Բահլ Շահաստանի՝ յերկիրն Քուշանաց. կեցեալ ամս ճլ, թագաւորեաց ամս ծէ։ Յետ նորա որդի նորա Արտաշիր՝ ամս լա։ Յետ նորա թագաւորէ նորին որդի Արշակ՝ որ կոչեցաւ մեծ՝ ամս ծը։

Սա թագաւորեցոյց զեղբայր իւր զՎաղարշակ 'ի վերայ աշխարհիս Հայոց։ Արդ՝ այսպէս զատուցեալ երեւէին ցեղքն թագաւորութեանց, Պարսից՝ և Հայոց։

Արշակ քաջ նախնեաց երկուց ցեղից՝ թագաւորեցելոյ Պահլաւկանին, և Արշակունւոյն։ Ամենայն քաջութեամբ թագաւորեաց ամս ծէ։ Յետ որոյ որդիքն զատուցեալք թագաւորք Պարսից. Արշակ մեծ՝ ամս ծը։ Արշական՝ ամս լ։

* Ի բնագրին էր ԳԼՈՒԽ Գ. մեք եդաք ԴՊՐՈՒԹԻՆ Բ.

Արշանակ՝ ամս ԼԱ : Արշէզ՝ ամս Ի : Արշաւիր՝ ամս ԽԶ : Արտաշէս՝ ամս ԼԴ : Դարեհ՝ ամս Լ : Արշակ՝ ամս ԺԹ : Արտաշէս՝ ամս Ի : Պերոզ՝ ամս ԼԴ : Վաղարշակ ամս Ծ : Արտաւան՝ ամս ԼԱ :

Զսա սպանեալ Արտաշրացւոյն Արտաշրի՝ որդւոյ Սասանայ, եբարձ զտէրութիւն Պահլաւաց։ Սկսեալ յերեսուն ամի թագաւորութեանն Փիլադելփոս Պտղոմէոսի, կալեալ նոցա ընդ ամ̃ ամս՝ ՆԾԷ ։

Յետ որոյ նուաճեալ Արտաշրացւոյն Արտաշրի որդւոյ Սասանայ զամ̃ արիս և զանարիս, և զբազումս 'ի նոյն ազգէ թագաւորութեն Պարթևաց՝ և Պահլաւկաց՝ թագաւորէ ինքն։ Եւ յետ նորա Պայազատք նորին՝ զնոյն ձեւ աւրինադրէն զՄամիկոնէիցն սակս ազգաց զնեղութիւնն։ Քանզի ոչ են սոքա որդիք ազգածնին Արամանեկայ, այլ են եկեալ 'ի Ճենաստանէ յամս Արտաւանայ արքայի Պարթևաց. և մեծին Խոսրովու արքային Հայոց. որ̃ լուայ յառնէն մեծէ՝ որ եկեալ էր հրեշտակութբ 'ի Ճենաց թագաւորէն առ արքայն Խոսրով, յոր իմ* հարցեալ 'ի դրանն

* Արդ՝ գործս այս է ծածկեալ և տարակուսելի, որպէս խօսեցեալ եմք. բայց ըստ մերս կարծեաց՝ համարիմք զսա լինել Ստեփաննոս Տարօնացւոյն՝ որ դիպեալ հրեշտակաց եկելոց 'ի Ճենաց աշխարհէն՝ 'ի պալատն Խոսրովու, իմացեալ իցէ զծագումն Մամիկոնէից 'ի նոցանէ. և այս լինի յայտնի ապացոյց՝ թէ Ստեփաննոս Տարօնացի լեալ է դ. դարու պատմիչ։ Եւ միւրգիչեանն Խոսրով հարկ է լինել թագաւոր Արշակունեաց տէրութեան, և 'ի նորին դրան հարցեալ և իմացեալ։ Վասն որոյ իրաւամբ կարծի թէ՝ այն գործ է Ստեփաննոսի՝ և ոչ Խորենացւոյն. որովհետեւ նա ոչ այնքան ամենայն պարագայիւք յիշէ վասն Մամիկոնէից ծագման. որ և Սեբէոս 'ի նորին Ստեփաննոսի աղբերէ առեալ շարունակէ զգործ իւր. որպէս և ինքն իսկ ասէ 'ի ճակատ գրոյն, " Երկրորդեցից 'ի պատմագրու-

արքունի՝ եթէ «Ազգ մի մեծ 'ի Հայաստան երկ-
րի կայ՝ զորմէ ասեն եթէ 'ի ձերմէ աշխարհէն
գնացեալ են»։ Եւ նա ասաց ինձ, «Ասե՛ն ասէ
գուսանք և 'ի մերում աշխարհին յերգս իւ-
րեանց, զԱմիկն և զԿռնակն արս երկուս լեալ
քաջս, և գլխաւոր եղբարս հարազատս, որդիք
Կառնամից նախարարին՝ որ էր երկրորդ 'ի թա-
գաւորութեանն Պենաստանի։ Որոյ մահուանն
առնս այսորիկ, առ զկին սորին թագաւորն նոցին
'ի կնութիւն։ Եւ եղև 'ի նմանէ որդի՝ որ զկնի
մահուան հաւր իւրոյ յաջորդեալ նստաւ յա-
թոռ հայրենի թագաւորութեանն։ Եւ նորա եր-
կու եղբարք նորա 'ի մաւրէ, և ո՛չ 'ի հաւրէ,
ապստամբեալ 'ի բաց կացին 'ի նմանէ. և միա-
բանեալ ընդ ինքեանս զմասն մի 'ի նախարարա-
ցըն և 'ի զաւրացն՝ առնեն ուխտ միաբանութե՟։
Որոց խորհեալ խորհուրդ չարութեան սպանա-
նել զեղբայրն իւրեանց՝ զթագաւոր աշխարհին
Պենդրակուր, և առնուլ զթագաւորութ՟ին նորա։

Եւ զաւրաժողով լինէին Ամիկն և Կռնակն
'ի վերայ նորա 'ի միում տեղւոջ աշխարհին
իւրեանց, և բաժանի զաւր աշխարհին յերկուս։
Ազգ լինի Պենդրակուրի. գումարէ և նա զզաւրս
իւրոյ կողմանն՝ և գնայ 'ի վերայ նոցա 'ի պա-
տերազմ։ Եւ յարձակին 'ի վերայ միմեանց՝ հար-
կանեն սրով սուսերի, և սպանեն զզաւրն ապըս-
տամբական։

---

ցըն Մովսիսի Խորենացւոյ՝ և Ստեփաննոսի Տարօնացւոյ հաւաստե
և Ճշմարիտ մատենագրաց»։ Եւ մի ոք երկբայեսցի անկեալ 'ի տա-
րակոյս՝ թէ ընդէ՞ր ոչ յիշէ զանուն հեղինակին 'ի շարագրուած
բանին իւրոյ. ահա՛ պատմագիրս բաւական համարի 'ի Ճակատ գը-
րոյս դրոշմել։

փախստական լեալ Մամիկն՝ և Կոնակն գնան առ արքայն Արշակունի՝ որ նստէր 'ի Բահլ Շահաստանի՝ յերկիրն Քուշանաց: Եւ էր խաղաղութիւն 'ի մէջ երկոցուն թագաւորութեանցն այնոցիկ:

Յայնժամ մեծաւ աղերսիւ խնդրեալ զնոսա Ճենբակուրի՝ յարքայէն Պարթևաց, «Զի բարձցէ 'ի միջոյ. ապա թէ ոչ՝ լուծցի ուխտ խաղաղութեանն՝ որ 'ի միջոյ մերում»: Իսկ նորա խնայեալ յարսն, ոչ ետ զնոսա 'ի ձեռս նորա, այլ գրէ առ նա սիրով, «Ընդրէն ուխտ խաղաղութեան մերոյ (ասէ) հաստատուն կացցէ 'ի միջի մերում, զի երդուեալ եմ առ նոսա՝ զի նոքա մի մեռցին, այլ ետու տանել զնոսա 'ի մուտս արևու՝ և յեզր երկրի՝ 'ի տեղին յայն, որ արեգակն 'ի մայրն մտանէ»:

Յայնժամ հրամայէ արքայն Պարթևաց զաւրաց իւրոց տանել զնոսա զգուշութեամբ մեծաւ՝ կնաւ, և որդւովքն իւրեանց, և ամենայն ախիւն իւրեանց յերկիրն Հայոց առ ազգական իւր արքայն Արշակունի՝ որ էր թագաւոր Հայաստան երկրին, ուր և սերեալ բազմացան յոյժ, և եղեն յազգ մեծ 'ի Մամիկոնայ և 'ի Կոնակայ. յայսմանէ այն է սպարապետ:

Եւ եղև յետ մահուանն Արտևանայ՝ որդւոյ Վաղարշու արքային Պարթևաց, թագաւորեաց Արտաշիր որդի Սասանայ միահեծան տէրութբ 'ի վերայ Բաբելացւոց, և Ասորւոց, և Մարաց, և Պարսից, և Պարթևաց, ամս ծ:

Յամի երրորդի Եղիանոսի կայսեր. և յամս Է. երրորդի ա. մեծի Խոսրովայ արքային Հայոց՝

փոփոխումն թագաւորութեանն այսորիկ լեալ։ Եւ էր Խոսրով ԼԱ. ամաւ։ Եղիանոս երրորդն. Արտաշիր՝ զառաջինն։

Յամի Է. երրորդի չորրորդի՝ մեծին Խոսրովայ. և չորրորդ ամի արքայի Պարսից Արտաշրի՝ թագաւորէ Տերենտիանոս ամիսս վեց. քանզի փութանակի վաղճանի։

Յամի ԼԵ. երրորդի Խոսրովայ արքայի. և 'ի հինգերորդ ամի Արտաշրի Պարսից արքայի՝ թագաւորէ Պրոպոս ամս Զ։ Խոսրով՝ ԼԷ։ Արտաշիր՝ Ե։ Պրոպոս զառաջինն։

Եւ եղեւ յամին ԽԱ. երրորդի մեծին Խոսրովայ. և 'ի ԺԱ. ամի Արտաշրի՝ թագաւորէ Յունաց Կարոս՝ հանդերձ որդւովքն իւրովք Կարինաւ՝ և Նումերիանոսիւ ամս Է։ Խոսրով ԽԱ։ Արտաշիր ԺԱ։ Կարոս զառաջինն։

Յամի ԽԲ. երրորդի Խոսրովայ։ ԺԲ. Արտաշրի. մինչ արքայ Խոսրով 'ի Միջագետս էր, Կարոս կայսր գումարէ ամբոխ զաւրաց բազմաց, և դիմէ 'ի վերայ արքային Խոսրովայ. անտի աճապարեալ ընդ դէմ նորա ելանէ* (Կոռնակ սպարապետ մեծին Խոսրովու հաւրն Տրդատայ՝ ասեն զմանէ յերկարեալ զամս կենացն ՃԿ. և ունել 'ի ժամ մահուանն) զհերս՝ և զաչս, և զլսելիս, և զզօրութիւն, և զթեթևութիւն մանկութեանն։

Եւ ապա (ժամ) եղև պատերազմ մեծ 'ի մէջ Խառանու՝ և Ուրհայի. հարկանէն և վանեն զզաւրն Յունաց. և մեռանի Կարոս 'ի պատերազմին հանդերձ միով որդւովն Կարինոսիւ։

---

* Փակագծիւ եդեալն ոչ գոյր 'ի բնագրին՝ զոր լցուցաք 'ի միւս օրինակէն։

Եւ 'ի նմին ամի թագաւորէ Յունաց Դիոկղետիանոս ամս իէ ։ Խոսրով իը ։ Արտաշիր ժը ։ Դիոկղետիանոս զառաջինն ։

Յամի Ի. երրորդի առաջներորդի Արտաշրի Պարսից արքային 'ի չորրորդ[illegible] ամի Դիոկղետիանոսի կայսեր՝ մեռանի քաջն Խոսրով 'ի վասնուն Անակայ ։ Եւ տիրէ 'ի վերայ աշխարհիս Հայոց՝ Արտաշիր արքայ Պարսից ամս ժա ։ Դիոկղետիանոս՝ զչորրորդն ։

Յամին Է. երրորդի Արտաշրի . հնգետասաներորդի Դիոկղետիանոսի՝ կայսերակերպ* չքեղութեամբ Տրդատիոս ելանէ ախոյեան ընդդէմ արքային Գոթաց ։ Եւ անդէն ձերբակալ արարեալ զախոյեան անարի զթագաւորն Գոթաց՝ ածեալ կացուցանէ յանդիման կայսերն Դիոկղետիանոսի . և անդէն 'ի նմին ամի թագաւորեցուցանէ Դիոկղետիանոս զՏրդատ 'ի վերայ աշխարհիս Հայոց ։ Գումարէ 'ի ձեռս սորա զաւրս բազումս , և արձակէ յիւրական իշխանութի աշխարհին Հայոց ։ Որ տիրէ ամենայն քաջութք և բարեպաշտութեամբ ամս Հ ։ Եւ է այսպէս . Արտաշիր իբ ։ Դիոկղետիանոս ժե ։ Տրդատէս զառաջինն ։

Յամին Թ . երրորդի Տրդատայ արքային Հայոց՝ թագաւորէ 'ի վերայ Յունաց աշխարհին Կոստանդիանոս . որ շինեաց զԲիւզանդիա ամս Թ ։ Արտաշիր զԽ ։ Տրդատիոս իններորդ ։ Կոստանդիանոս զառաջինն ։

Յամին ԽԹ . երրորդի Արտաշրի արքային Պարսից . և ժԹ . ամ Տրդատայ արքային Հայոց՝ Թա

* Ի միւս օրինակին « կայսերապսակ » ։

գաւորէ Շապուհ որդի Արտաշրի 'ի վերայ աշխարհին Պարսից ամս հգ ։ * (Եւ 'ի սոյն ամի վախճանի կայսրն Յունաց Մաքսիմիանոս · և Թագաւորէ Գալիանոս՝ ամս ժը · և տայ պատերազմ ընդ Շապհոյ որդւոյ Արտաշրի 'ի Միջագետս 'ի Խառան · և լինի անդ կոտորած մեծ, մինչև 'ի նեղ անկանել զաւրութն Պարսից յերկիրն Ասորհայու · և տեսեալ Շապուհ զպարտութիւն իւր զաւրուն, զիջանի առնել խաղաղութիւն ընդ կայսեր · և նա առեալ զգանձս և զաւարս բազումս դառնայ 'ի տեղի իւր ։) Տրդատէս ի ։ Մաքսիմիանոս՝ և Գալիանոս՝ զերկորդն ։ Շապուհ զառաջինն ։

Յամին լէ · երորդի Տրդատայ արքային ։ ժը երորդի Շապհոյ արքայի՝ Թագաւորէ Յունաց Մաքսիմիանոս որդի Մաքսիմիանոսի՝ ամս ժգ ։ Տրդատէս լէ ։ Շապուհ ժը ։ Մաքսիմիանոս զառաջինն ։

Յամին ծ · երորդի Տրդատայ արքայի՝ Թագաւորէ Յունաց Կոստանդէս՝ ամս ժէ ։ Տրդատէս ծ ։ Շապուհ լա ։ Կոստանդէս զառաջինն ։

Յամին կէ · երորդի Տրդատայ արքային Հայոց ։ խը · ամի Շապհոյ արքային Պարսից՝ Թագաւորէ Կոստանդիանոս որդի Կոստանդեայ ամս իբ ։ Տրդատ կէ ։ Շապուհ խը ։ Կոստանդիանոս զառաջինն ։

Յամին ծբ · երորդի Շապհոյ արքային Պարսից ։ Ն · երորդի ամի բարեպաշտին Կոստան-

* Փակագծիւ նշեալն ոչ գոյր 'ի բնագրին · այլ յաւելցաւ 'ի միւս օրինակէ ։

գիանոսի կայսեր՝ վաղճանի երանելին Տրդատէս . և Թագաւորէ Խոսրով որդի նորա ամս ժէ ։ Շապուհ զծբ . Կոստանդիանոս Ե . երորդն ։ Խոսրով զառաջինն ։

Յամին կԹ . երորդի Շապհոյ արքային Պարսից ։ իբ . Կոստանդիանոսի կայսեր՝ Թագաւորէ 'ի վերայ Հայոց Տիրանն որդի Խոսրովայ՝ ամս ժբ ։ Շապուհ կԹ ։ Կոստանդիանոս իբ ։ Տիրան զառաջինն ։

Յամի իէ . երորդի Կոստանդիանոսի կայսեր ։ 'ի Է . ամի Տիրանայ արքայի Հայոց՝ Թագաւորէ Ներսէհ որդի Շապհոյ 'ի վերայ Պարսից ամս Թ ։ Կոստանդիանոս իէ ։ Տիրան Է ։ Ներսէհ զառաջինն ։

Յամի ժբ . երորդի Տիրանայ արքայի Հայոց՝ Թագաւորեն Կոստանդիաս և Կոստաս՝ որդիք Կոստանդի բարեպաշտի՝ ամս ժդ ։ Տիրան ամս ժբ ։ Ներսէհ Է ։ Կոստանդիաս՝ և Կոստաս՝ զառաջինն ։

Յամին թժ . երորդի Տիրանայ ։ Ու Է . երորդ ամի Ներսէհի արքային Պարսից ։ Ու Ա . ամի Կոստանդի և Կոստասայ՝ որդւոց Կոստանդիանոսի բարեպաշտի Հռոմայ՝ եկն 'ի վերայ նորա 'ի Բասեան գաւառի 'ի գեաւղն Յոսխայ՝ մինչ դարձուցանել նմա զՏիրան արքայ ամենայն գերութեամբն հանդերձ . և զորդի նորա Արշակ Թագաւորեցուցանել՝ և արձակել 'ի Հայս ։ Ներսէհ զութերորդն ։ Կոստանդիաս և Կոստաս զբ ։ Արշակ զառաջինն ։

Յամի չորրորդի Կոստանդեայ և Կոստասու ։ և յերրորդի ամի Արշակայ՝ Թագաւորեաց Պար-

ւից Արամազդ որդի Հայկոյ ամս Գ․ Կոստանդ-
դիոս և Կոստաս զԷ․Ն։ Արամազդ զառաջինն․

Յամի Է․ երորդի Արշակայ արքային Հայոց՝ Թագաւորէ ՚ի վերայ Պարսից՝ Հապուհ որդի Արամազդայ՝ ամս Հ։ Կոստանդիոս և Կոստաս զԷ․ երորդն։ Արշակ Է․ երրորդն։ Հապուհ զառաջինն։

Յամի ԹԺ․ երորդի Հայկոյ արքայի Պարսից․ Ի․ երորդի չորրորդի ամի Արշակայ արքային Հայոց՝ Թագաւորէ Յունաց Յուլիանոս՝ ամս Բ։ Արշակ ԻԴ։ Հապուհ ԺԹ։ Յուլիանոս նզովածն զառաջինն։ Սա որդի է քեռ մեծին Կոստանդիանոսի․ Թողեալ զքրիստոնէութիւնն և եղև կռապաշտ։ Ի նոյն աւուրս երանելին Աթանաս հալածեցաւ յԱրիանոսացն՝ զոր Սոկրատն պատմէ, ՚ի սուրբն Կոստանդիանոսէ սկսանի՝ և մինչ ՚ի փոքր Թէոդոսն զանօրէնց և զորոց գործքն՝ և զհայրապետացն զուղղափառութիւնս։ Յուլիանոս՝ և Գաղիանոս՝ որդիք Գաղմատիոսի ումեմն․ մնացին որք ՚ի մէկ հաւրէ․ և ոչ ՚ի մաւրէ, զոր սնոյց Կոստանդ բարեպաշտն։ Իւ սընոյց․ յետոյ եղեն կռապաշտ։

Կարփի քոյր Թագաւորին Կոստանդէ՝ կին Լիկիանէ Թագաւորին՝ որ ՚ի բռնադբաւսելն մեռաւ։

Յամին ԻԴ․ երորդի Արշակայ Թագաւորին Հայոց։ Իւ ՚ի ԻՁ․ երորդ ամի Հապուհ արքային Պարսից՝ Թագաւորէ Վաղենտիանոս և Վաղէս՝ ամս ԺԴ․ Արշակ ԻԴ։ Հապուհ ԻՁ․ Վաղենտիանոս և Վաղէս զառաջինն։

Յամին ԼԴ․ երորդի Հայկոյ արքային Պարսից․ ԼԹ․ ամի Արշակայ արքային Հայոց՝ Թագաւորէ

Յունաց Դրատխանոս զառաջինն ։

Յամի խդ. երորդի Շապհոյ արքային Պարսից՝ և Յուլիանոսի պղծոյ*, ըմբռնի Արշակ Հայոց արքայ ՚ի Շապհոյ արքայէն Պարսից ։ Եւ տիրէ Շապուհ ՚ի վերայ Հայոց ամս ժբ. սրով՝ և հրով՝ և գերութեամբ ։ Նա Թագաւորէ Յունաց Թէոդոս՝ ամս ժԹ ։ Շապուհ ծա. (՚ի տէրութէն (՚ի վր Հայոց) զերկոտասաներորդն**) ։ Թէոդոսն մեծ զառաջինն ։

Յամին ծդ. երորդի Շապհոյ արքային Պարսից ։ Եւ ՚ի դ. երորդի ամի Թագաւորութեանն Թէոդոսի մեծի՝ Թագաւորեցոյց Թէոդոս զՊապ որդի Արշակայ ՚ի վր աշխարհին Հայոց, տիրէ ամս ժդ ։ Շապուհ ծդ ։ Թէոդոս դ ։ Պապ զառաջինն ։

Յամի կԹ. երորդի Շապհոյ արքային Պարսից ։ ժԹ. երորդի Թէոդոսի մեծի՝ Թագաւորէ ՚ի վերայ Հայոց Վարազդատ՝ ամս դ ։ Շապուհ կԹ ։ Վարազդատ զառաջինն ։

Յամի հ. երորդի Շապհոյ արքայի Պարսից ։ Երկրորդ ամի Վարազդատայ արքայի Հայոց՝ Թագաւորէ Յունաց Արկադէոս որդի Թէոդոսի ամս ժԹ ։ Շապուհ հ ։ Վարազդատ զերկրորդն ։ Արկադէոս զառաջինն ։

Յամի ե. երորդի Արկադեայ կայսեր ։ ՚ի դ.

---

* Յերկու օրինակս այդպէս էր գրեալ, « Յուլիանոսի պղծոյ » Արդ՝ մնաք ՚ի տարակոյս, զի ՚ի վերայ ժԹ. երորդ ամի Շապհոյ արքային Պարսից, և խդ. ամի Արշակայ արքային Հայոց՝ յիշելոց զՅուլիանոս նշանակեալն « երկու ամ Թագաւորեաց » ասելով, և ասա կրկին եւս յիշէ՝ որ լինի սխալ. որովհետև խդ. ամի Շապհոյ լինել ասէ. գոյ միջոց Թուոյն իէ ամ ։

** Ի միւս օրինակին՝ ոչ գոյ փոխադրումն երկուցն ։

երորդի Վարազդատայ արքայի Հայոց՝ Թագաւորէ Պարսից Արտաշիր որդի Շապհոյ՝ ամս Դ։ Արկադէոս Ե։ Վարազդատ Դ։ Արտաշիր զառաջինն։

Յամի Դ. երորդի Արկադեայ կայսեր։ Յերկրորդի ամի Արտաշրի արքային Պարսից՝ Թագաւորեն ՚ի վերայ Հայոց՝ Արշակ և Վաղարշակ՝ ամս Ե։ Արկադէոս Դ։ Արտաշիր Բ։ Արշակ և Վաղարշակ զառաջինն։

Ապա Թագաւորէ Պարսից՝ Վռամ ամս ԺԱ։ Արկադէոս ամս Թ։ Արշակ և Վաղարշակ՝ Դ։ Վռամ զառաջինն։

Յամի երկրորդի Վռամայ. մետասաներորդի ամի Արկադեայ կայսեր՝ Թագաւորէ ՚ի վերայ Հայոց Խոսրով միւս. հրամանաւ Պարսից արքային՝ ամս Դ։ Արկադէոս ԺԱ։ Խոսրով զառաջինն։

Յամի ԺԴ. երորդի Արկադեայ կայսեր։ Եւ ՚ի Դ. երորդի ամի Վռամայ Պարսից արքային՝ Թագաւորէ Հայոց Վռամշապուհ արքայ՝ Ի։ Արկադէոս ԺԴ։ Վռամ՝ Դ. երորդն։ Վռամշապուհ զառաջինն։

Յամին ԺԱ. երորդի Վռամայ Պարսից արքայի՝ Թագաւորէ Յունաց Թէոդոս՝ ամս ԽԲ։ Վռամշապուհ Է։ Յազկերտ զառաջինն։

Յամի երկրորդի Յազկերտի՝ որդւոյ Վռամայ. Եւ յամի երկրորդի Թէոդեայ կայսեր բարձաւ Թագաւորութիւնն Հայոց՝ որ տևեաց ամս ՆԵ. Եւ վաղճանեցաւ և վճարեցաւ։

Եւ արդ՝ երկակի կանոնաւ զՊարսից՝ և զՅունաց հաստատելով նշանակեցից զԹագաւո-

րութեան ժամանակին ։

Որդ՝ Թագաւորէ Պարսից Յազկերտ ամս իա ։ Եւ Անորիոս Թագաւորէ Յունաց ամս իբ ։ Յազկերտ զառաջինն ։ Եւ Անորիոս զառաջինն ։

Յամի Ի․ երորդի երկրորդի Անորեայ կայսեր՝ Թագաւորէ Վռամ որդի Յազկերտի՝ ամս իբ ։ Եւ յամի երկրորդի Վռամայ՝ Թագաւորէ Յունաց Թէոդոս՝ ամս իբ ։ Եւ Անորիոս իբ ։ Վռամ՝ բ ։ Թէոդոս զառաջինն ։

Յամի Ի․ երորդի Թէոդոսի փոքու՝ Թագաւորէ Պարսից Յազկերտ՝ որդի Վռամայ, ամս ժթ ։ Եւ յամի յազկերտի Թագաւորէ Յունաց Կոստանդիաս՝ ամս ա ։ Յազկերտ զառաջինն ։

Յամի երկրորդի Յազկերտի՝ Թագաւորէ Յունաց Վաղենտիանոս՝ ամս է ։ Յազկերտ զերկրորդըն ։ Վաղենտիանոս զառաջինն ։

Յամի ժը․ երորդի Վաղենտիանոսի կայսեր՝ Թագաւորէ Պարսից Վաղարշ որդի Յազկերտի՝ ամս դ ։ Վաղենտիանոս ժը ։ Վաղարշ զառաջինն ։

Յամի Ի․ երորդի երկրորդի՝ Վաղենտիանոսի կայսեր, Թագաւորէ Պարսից Պերոզ՝ ամս խը ։ Վաղենտիանոս իբ ։ Պերոզ զառաջինն ։

Յամի Ժ․ երորդի Պերոզի՝ Թագաւորէ Յունաց Նարկիսոս՝ ամս դ ։ Պերոզ Ժ․ Նարկիսոս զառաջինն ։

Յամի ժէ․ երորդի Պերոզի արքայի՝ Թագաւորէ Յունաց Վռափինոս՝ ամս գ ։ Պերոզ ժէ ։ Վռափինոս զառաջինն ։

Յամի Լ․ երորդի Պերոզի՝ Թագաւորէ Յունաց Մարկիանոս՝ ամս Ե ։ Պերոզ Ի ։ Մարկիանոս զառաջինն ։

Յամի իե․ երորդի Պերոզի՝ Թագաւորէ Լեւոն զառաջինն։ Յամին է․ երրորդի Պերոզի՝ Թագաւորէ Յունաց Անթիմոս՝ ամս զ․ Պերոզ լա․ Անթիմոս զառաջինն։

Յամի խ․ և չորրորդի Պերոզի՝ Թագաւորէ Յունաց Ուլիմպաւոս՝ ամ մի։ Իսկ 'ի միւսում ամի միւս Զենոն՝ ամ մի։ Իսկ 'ի խզ․ երորդին Պերոզի՝ Թագաւորէ Զենոն 'ի վերայ Յունաց՝ ամս ժէ։ Պերոզ խզ։ Զենոն զառաջինն։

Յամի չորրորդի Զենոնի՝ Թագաւորէ Պարսից Զամասպ՝ ամս ը։ Զենոն 'ի վերայ Յունաց զչորրորդն։ Զամասպ զառաջինն։

Իսկ 'ի վերայ Ե․ երորդի ամի Զենոնի կայսեր՝ Թագաւորէ Պարսից Կաւատ՝ ամս խա։ Զենոն զ։ Կաւատ զառաջինն։

Յամի գժ․ երորդի Կաւատայ՝ Թագաւորէ Յունաց Անաստաս՝ ամս իէ։ Կաւատ զժգ։ Անաստաս զառաջինն։

Յամի խ․ երորդի Կաւատայ՝ Թագաւորէ Յունաց Յուստիանոս՝ ամս թ։ Կաւատ զխ։ Յուստիանոս զառաջինն։

Յամի երրորդի Յուստիանոսի կայսեր՝ Թագաւորէ Խոսրով որդի Կաւատայ՝ ամս իէ։ Յուստիանոս զերրորդն։ Խոսրով զառաջինն։

Յերեսուն և եօթն ամի Խոսրովայ՝ Թագաւորէ Յունաց Յուստիանոս՝ ամս ժը։ Խոսրով զլէ։ Յուստիանոս զառաջինն։

Յամի ժը․ երորդի Յուստիանոսի կայսեր՝ Թագաւորէ Պարսից Որմիզդ որդի Խոսրովայ ամս ժը։ Յուստիանոս ժը։ Որմիզդ զառաջինն։

Յամի երկրորդի Որմզդի՝ Թագաւորէ Յու-

նաց Տիբերոս՝ ամս դ: Որմիզդ զերկրորդն: Տիբերոս զառաջինն:

Ի հինգերորդի ամի Որմզդի՝ Թագաւորէ Յունաց Մաւրիկ՝ ամս իա: Որմիզդ զե: Մաւրիկ զառաջինն:

Յամի է. երրորդի Մաւրկայ կայսեր՝ Թագաւորէ Պարսից Խոսրով որդի Որմզդի՝ ամս լէ: Մաւրիկ զէ. երրորդն: Խոսրով զառաջինն:

Յամի ժդ. երրորդի Խոսրովայ՝ Թագաւորէ Յունաց Փոկաս՝ ամս ը: Խոսրով ժդ: Փոկաս զառաջինն:

Յամի ի. երրորդի Խոսրովայ Պարսից արքային՝ Թագաւորէ Յունաց Հերակղոս՝ որդի Հերակղի, ամս լ: Խոսրով իէ: Հերակղոս զառաջինն:

Յամի ժէ. երրորդի՝ Հերակղի կայսեր՝ Թագաւորէ Պարսից՝ Կաւատ, որդի Խոսրովայ ամս ա: Հերակղոս ժէ: Կաւատ զառաջինն:

Ապա Արտաշիր ամս դ: Հերակղոս ամս ի: Արտաշիր զառաջինն:

Ապա Բոր Բամբիշն դուստր Խոսրովայ՝ ամս բ: Հերակղոս իա: Բամբիշ զառաջինն:

Ապա Յազկերտ ամս ի: Հերակղոս իբ: Յազկերտ՝ զառաջինն:

Յամի իդ. երրորդի Հրաշելոյն Հերակղի կայսեր: Եւ յերկրորդ ամի՝ միաբանեալ Պարսից արքայի ընդ Իսմայելացիսն, (որ ելին) արտաքս 'ի Սինէ անապատէ՝ հրամանաւ. Աստուծոյ առնել անապատ միան գամայն զամենայն երկիր: Հերակղոս իդ: Յազկերտ զերկրորդն: Ամու արքայ՝ Իսմայելի զառաջինն:

Բայց զամս եկամտիցն և ծառայիցն Թագաւո

թելլոցն որպէս, Խառեմայն և զխառոխ Որմզդին, և Խոսրովայն, և զՈրմիզդն՝ որք բռնութբ կալան զԹագաւորութիւն: Եւ էր որ ընդ պատառել ազգացն հակառակութեամբ 'ի սոյնս յաւելեալ կարգեցից Թիւ. որպէս զկէս ամին Խառեմայ, 'ի կէս ամին Կաւատայ. յաւել ես առացից ամ մի:

Յամի Է. երորդի Պարսից արքայի Յազկերտի՝ վաղճանի Երանելին Երակղէս. և Թագաւորեն որդիք նր Կոստանդին և Երակղաւ: Ի նմին ամին մեռաւ Կոստանդին դաւեալ 'ի մաւրէն: Եւ Թագաւորէ Երակղաւ: Դարձեալ փոխեցաւ Երակղաւ, և Թագաւորէ Կոստաս որդի Կոստանդեայ՝ որ կոչեցաւ յանուն հաւր իւրոյ Կոստանդին: Յազկերտ Է. երորդ: Կոստաս զառաջինն:

Եւ Թագաւորեաց Յազկերտ 'ի վերայ աշխարհին Պարսից ամս Ի: Յազկերտ Ի: Կոստանդին ԺԱ: Արքայն Իսմայէլի Թ:

Յերկոտասան ամի Կոստանդի. և 'ի.Ի. երորդ ամի Իսմայէլացւոց տէրութեանն՝ բարձաւ տէրութիւնն Պարսից՝ որ կալաւ ՇԺԲ ամ. (աշխարհի):



# ՆԱԽԵՐԳԱՆՔ

## ՀԵՂԻՆԱԿԻՆ Գ. ԴՊՐՈՒԹԵԱՆ

Եւ եղև 'ի նուազիլ ժամանակաց տէրու-թեանն Արշակունեաց 'ի Հայաստան աշխարհի 'ի բառնալ տէրութեանն Վռամշապուհ արքայի՝ տիրէ 'ի վերայ սորա ազգն Կարքեդովմայեցի իշ-խանութեանն. խորհուրդ 'ի ձեռն առեալ ա-հեղ և ահագին՝ հանդերձ միաբանութեամբ դառնաշունչ և մեծամեծ Քաղդէիցն, և ամ գլխաւոր նախարարաւքն թագաւորութեան իւ-րոյ՝ բառնալ 'ի Հայաստան աշխարհէ զբարե-պաշտութեան պտուղս։

Ուստի ոչինչ աւգտեցաւ, այլ յոյժ վնասե-ցաւ. և բարեպաշտութիւնն եւս քան զեւս ծաղ-կեալ պայծառացաւ.

Արդ՝ զժամանակս թագաւորութեանն չա-րագործին Յազկերտի. և եթէ ո՞րպէս նա կամէր զԱստուածայինն եղծանել կարգս։ Եւ կամ ո՞ր-պէս քաջ նախարարացն Հայոց՝ և նախանձաւորն Աստուծոյ նահապետն Մամիկոնէից տանն՝ Կար-միրն կոչեցեալ Վարդան, հանդերձ միագունդ սպառազէն նիզակակից ընկերաւքն, և զաւրաւքն իւրեանց կազմեալ զինեցան 'ի պատերազմ, առ-եալ 'ի ձեռն զվահանն հաւատոյ, և զգեցեալ իբրև զզրահ ամրութեան զնախանձն Աստուա-ծայինն բանին. դոգցես թէ առաջի աչաց իւր ականատես դէմ յանդիման տեսանելով զ'ի վե-

բուստ առաքեալ նոցա զպսակն։ Վասն որոյ ար-
համարհեալ զմահ, և առաւել լաւ համարեալ
տեսանել 'ի վերայ Աստուածային պողոտային։

Եթէ՝ որպէս 'ի վերայ նոցա էին զաւրքն Պար-
սիկ սաստիկ բռնութեամբ, և կամ՝ որպէս 'ի
դիմի հարեալ՝ զիւրեանց կատարեցին զնահա-
տակութիւն։ Եւ կամ՝ որպէս 'ի ձեռս հեթա-
նոսաց ըմբռնեալ սուրբ վկայքն Քրիստոսի՝ կա-
տարեցին զնահատակութիւնս իւրեանց յԱպր
Շահր մերձ 'ի Նիւշապուհ քաղաքի. 'ի տեղւոջն՝
որ կոչի Թէարքունի։

Այն ամենայն 'ի ձեռն այլոց գրեցաւ. որք
ցուցանէ նոյն իսկ պատմութիւնն։ Բայց զայն
ամենայն՝ որ 'ի Պերոզի ժամանակն, եղեալ չա-
րութիւն. և զառ 'ի Խոսրովայ զապստամբութիւն՝
զՎարդանայ՝ և զզաւրացն Պարսից զապստամբելն
'ի յՈրմզդիէ. զմահն Որմզդայի. և զԹագաւո-
րելն Խոսրովայ. զմահն Մաւրկայ. և զԹագա-
ւորելն Փոկասայ. զառնուլն Եգիպտոսի. զկոտո-
րածն Աղէքսանդրի. զդիմելն Հերակղի 'ի կող-
մանս հիւսիսոյ առ արքայն Թէտալացւոց. զյու-
ղարկումն անհուն բազմութեանն ազգաց. զաս-
պատակն Յունաց յԱտրպատական, զառ և զա-
ւար. և զդարձն ընդ Փայտակարան։ զեկ զաւ-
րացն Պարսից յարևելից զդիմն հարկանել նմա։
Զպատերազմն՝ որ յաշխարհին Աղուանից. զդարձ
կայսերն 'ի Նախջուան քաղաքն. և զկռիւն Ար-
ճիշոյ. զգնալն կայսեր անդէն 'ի սահմանս իւր.
զմիւս ևս այլ դիմելն 'ի վերայ Խոսրովայ. զգործ
պատերազմին՝ որ 'ի Նինուէ. զասպատակն՝ որ 'ի
Տիզբոն քաղաք. զդարձն յԱտրպատական. զմահն

Խոսրովայ. զթագաւորէն Կաւատայ. զհաշտութիւն՝ որ 'ի մէջ թագաւորացն երկոցունց. ըզթողուլն անդրէն 'ի բաց զսահմանսն Յունաց. զդարձ Աստուածեան խաչին 'ի Քաղաքն սուրբ։

Յետ այսորիկ զարթուցեալ անհուն բարկութիւն, և զվերջին աղէտս հինեն՝ որ 'ի կողմանս հարաւոյ։ Եւ թէ՝ որպէս յանկարծաւրէն շարժեցան բանակքն Իսմայէլի, և 'ի վայրկեան ժամանակի վանելով զզաւրութիւն թագաւորացն երկոցունց՝ կալան յԵգիպտոսէ մինչև յայս կոյս գետոյն մեծի Եփրատայ՝ և ցսահման Հայաստանեայց՝ և յեզերէ ծովուն մեծի յարևմտից՝ մինչև 'ի դուռն թագաւորութեանն Պարսից։ Զամենայն քաղաքս Միջագետաց՝ Ուռհայ՝ և ըզՏիգրոն՝ և զՎեհ Արտաշիր, և զՄարանդ, զՀամատան՝ մինչև ցԳանձակ քաղաք, և ցՀրատն մեծ՝ որ յԱտրպատական գաւառի։

Զայս ամենայն կամեցայ 'ի ձեռն գրոյս այսորիկ կարճառաւտ ձեզ մատուցանել։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Ապստամբութիւն Վահանայ ի Պերոզէ, և դառնալ իշխանութեանն, և պատերազմաւ յաղթել. մահ Պերոզի և թագաւորել Կաւատայ, և տանել զՎահանն մարզպանութեամբ. մահ Կաւատայ՝ և թագաւորել Խոսրովայ՝ որ Անուշ Ռուան կոչի. ապստամբել Վարդանայ, և ծառայել Յունաց. պատերազմ Խոսրովայ և պարսից։

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Գ*.

## ԳԼՈՒԽ Ա.

Եւ եղև յամս Պերոզի արքայի Պարսից՝ բարձումն ամենայն իշխանութեանցն՝ և կարգաց՝ և աւրինաց քրիստոնէութեան, և այնպիսի վտանգնեղութեան հալածանաց և քամահանաց 'ի վերայ հասեալ իշխանաց, մինչ զի 'ի բաց ընկեցին յինքեանց զլուծն ծառայութեան։

Եւ ապստամբեալ Մամիկոնեանն Վահան՝ հալածեաց զՊարսիկս, և բռնաբարայն դրաւեաց զիշխանութիւնն։

Յայնժամ արձակէ 'ի վերայ նորա Պերոզ ար-

---

* Ի բնագրին էր ԳԼՈՒԽ Ջ. մեք եդաք ԴՊՐՈՒԹԻՒՆ Գ.

քայ Հոնաց զաւր յոյժ ։ Եւ հրաման տայ խիստ տաստիւ՝ սպանանել զապստամբսն, և հարկանել զամենայն արու սրով սուսերի ։

Ընդդէմ սորա աճապարեալ Վահան սպարապետն Է. հազարաւ ընտիր վառելոց՝ կարգին գունդ առ գունդ, և ճակատ առ ճակատ, և յարձակին 'ի միմեանս 'ի ձայն փողոյ տագնապաւ 'ի դաշտին Գերանայ ։

Ընդ յաւգնութիւն հասեալ Ստուածեան Բանն, հողմն սաստկացուցեալ զմրրիկ փոշւոյն՝ զզաւրաւքն Պարսից հեղոյր. իբրև զմութ խաւարի՝ զնոսա պատէր 'ի միջաւրեայ ժամանակի ։ Սաստիկ կատորած լինէր երկոցունց կողմանցն, և ոչ գոյր ընտրել զդի անկելոցն, ոչ զՊարսիկ՝ և և ոչ զՀայ զաւրական ։ Բայց սակայն զաւրացեալ զաւրն Հայոց վանեցին ընդ կատորածով զզաւրն Պարսից, և զմնացեալսն փախստական արարեալ՝ հալածական տանէին. և դարձան յաղթութէ մեծաւ ։

Այս Վահան ժողովեաց և զհարկս աշխարհին Հայոց՝ և շինեաց եկեղեցիս մեծամեծս, զոր աւերեալ էր Պարսից 'ի Վաղարշապատ քաղաք, և 'ի Դուինի, և 'ի Արզըրայս, և 'ի բազում տեղիս աշխարհիս Հայոց ։ Եւ շինեալ զերկիրն նորոգեաց վերստին ։

Իսկ Պերոզի արքային Պարսից՝ թէպէտ և կամեցաւ վերստին զաւրս գումարել 'ի վերայ աշխարհիս Հայոց. ոչ եղև նմա պարապ, զի համբաւք թշնամեացն ստիպէին զնա 'ի կողմանցն Քուշանաց ։ Եւ յայնմ մարզէ, զի ինքն իսկ արքայն Քուշանաց խաղացեալ գայր 'ի վերայ նր

զաւրու մեծաւ ։

Եւ նորա գումարեալ զաւրս իւր՝ գնաց ընդ-դէմ նորա տագնապաւ մեծաւ ։ Ասէ, «Երթայց նախ առաջին զնա վանեցից, եւ ապա պարապաւ դարձեալ գնայից 'ի Հայս՝ եւ մի խնայեսցէ սուր իմ 'ի նոսա, յարս եւ 'ի կանայս ։» ։

Եւ ինքն անցեալ՝ փութանակի եհաս ընդ-դէմ Թշնամւոյն յափնեւս ․ եւ եղեւ պատերազմ սաստիկ, հարին եւ կործանեցին զբազմութիւն զաւրացն Պարսից, մինչեւ ոչ մնաց 'ի նոցանէ ապրեալ եւ փախստական ։ Եւ մեռաւ Պերոզ արքայ 'ի պատերազմին, հանդերձ եւթանեքումբք որդ-ւովքն ։

Եւ ապա յայնժամ Թագաւորեաց Կաւատ որդի նորա 'ի վերայ աշխարհին Պարսից ։ Եւ զի քեկեալ էր զաւրութիւն բազմութեանն զաւ-րաց իւրոց, ոչ ընդ ումեք կամեցաւ ունել գործ պատերազմի, այլ արար խաղաղութ̃ի յամենայն կողմանց ․ առնէ եւ ընդ Հայոց հաշտութիւն, եւ կոչէ զՎահան 'ի դուռն, եւ մեծարէ զնա մե-ծապէս պատուով ։ Եւ տայ նմա զմարզպանութ̃ի աշխարհին, եւ զՄամիկոնեայց տէրութիւն, եւ երդում առ բազում 'ի ծառայութիւն, եւ ար-ձակէ բարեաւ յերկիր իւր ։

Յետ Վահանայ կալաւ զիշխանութ̃ին Վարդ Պատրիկ եղբայր նորա ․ սակաւ ինչ ժամանակ ․ եւ մեռաւ ։ Զկնի նորա եկին մարզպան Պարսիկք ․ ապա ոչ կարացին պատերազմիլ Հայք, 'ի հնա-զանդութեան կացին մինչեւ զՍուրէն Մարզպանն՝ եւ զՎարդան Մամիկոնէից Տէրն ։

Եւ եղեւ 'ի խմ̃ ․ ամի Թագաւորութ̃ե Խոսրո

վայ՝ որդւոյ Կաւատայ՝ ապստամբեաց Վարդան, և 'ի բաց եկաց 'ի ծառայութենէ Թագաւորութեանն Պարսից. հանդերձ միաբանութ̃բ ա̃մ Հայաստանեայք: Սպանեալ զՍուրէնն Մարզպան յանկարծաւրէն 'ի Դըւին քաղաքի. առին զաւար բազում, և գնացին 'ի ծառայութիւն Յունաց:

Յայնժամ յառաջ քան զայս ապստամբեալ 'ի բաց եկաց 'ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան աշխարհին Սիւնեաց, և խնդրեաց 'ի Խոսրովայ յարքայէն Պարսից, զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց 'ի Դըւնայ 'ի Փայտակարան քաղաք, և կարգեսցէ զքաղաքն 'ի Շահրմար Ատրպատականի. զի մի ևս կոչեսցի անուն Հայոց 'ի վերայ նոցա: Եւ կատարէր հրամանն:

Իսկ առ Հայոց երդնոյր Թագաւորն Յունաց, և հաստատէր զնոյն ուխտ՝ որ 'ի մէջ Թագաւորացն էր երկոցունց՝ երանելւոյն Տրդատայ՝ և Կոստանդիանոսի. և տայր նոցա զզաւրսն կայսերական յաւգնութիւն: Եւ նոցա առեալ զզաւրն՝ դիմեցին 'ի վերայ քաղաքին Դըւնայ՝ և պաշարեալ կործանեցին 'ի վերուստ մինչև 'ի վայր. և հալածեցին զզաւրն Պարսից՝ որ 'ի նմա կային:

Բայց եհաս 'ի վերայ նոցա յանկարծաւրէն խռովութիւն մեծ, զի զեկեղեցի սրբոյն Գրիգորի, որ շինեալ էր մերձ 'ի քաղաքն, էին արարեալ համբարանոցս Պարսիկքն, հարին հուր և այրեցին, վասն որոյ եղև նոցա խռովութ̃ի մեծ:

Գայ ապա 'ի վերայ նորա Միհրանն Միհրևանդակ ի̃. հազարաւ զաւրու, և փղաւք բազմաւք. Եւ եղև պատերազմ մեծ 'ի դաշտին Խա-

զամխեայ, և հարեալ զզաւրն Պարսից անհնարին հարուածովք մաչէին 'ի սուր սուսերաց, զփիղսըն զամենայն Թափէին։ Եւ Միհրանն սակաւուք պրծեալ գնացին յերկիրն իւրեանց։

Այս այն Վարդան է՝ յորոյ վերայ եկն ինքն արքայն Պարսից՝ կոչեցեալ Անուշ Ռուան Խոսրով, հանդերձ բազմութեամբ սպառազէն զաւրացն՝ և փղաւք բազմաւք, և Ճանապարհ կալեալ ընդ գաւառն Արտազու՝ գնաց ընդ Բագրևանդ՝ զանց արարեալ զԿարնոյ քաղաքաւ։ Եւ կալեալ Ճանապարհ գնաց 'ի տեղի մի, և բնակեցաւ դէմ յանդիման նորա։

Եւ 'ի վաղուեան առաւօտուն հապճեալ ստիպով կարգեն գունդ առ գունդ, և ճակատ առ ճակատ, և բաղխէին զմիմեանս պատերազմաւ։ Եւ սաստկացաւ պատերազմն 'ի վերայ երեսաց երկրի, և խմբեցաւ պատերազմն յոյժ. և մատնեաց Տէր 'ի պարտութիւն զԹագաւորն Պարսից՝ և զաւրս նորա զամենայն։ Եւ խորտակեցան առաջի Թշնամեացն սրով սուսերի, և փախեան յերեսաց նոցա սաստիւ տագնապաւ, ո՛չ գիտելով զճանապարհս փախստեան իւրեանց՝ երթեալ ամրացան 'ի գետն մեծ՝ որ կոչի Եփրատէս։

Եւ ուռուցեալ 'ի վեր ջուրն՝ խաղացոյց ըզբազմութիւն փախստականացն իբրև զբազմութի̃ մարախոյ, և ո՛չ կարացին յաւուր յայնմիկ ճողոպրել բազումք։ Բայց Թագաւորն մազապուր պըրծեալ սակաւուք՝ 'ի փիղս և 'ի ձին ապաստան*.

* Ի բնագիրն " ապստամբ "։

եղեալ փախստական ընդ Աղձնիսն անդրէն 'ի կայանս իւր երթայր ։

Եւ նոքա առին զբանակն ամենայն հանդերձ արքունական գանձիւքն ։ Եւ կալան զԻամբրիշն և զբանակն, և Թափեցին զՄաշապերձանն ։ ա... դեսպակն ոսկեղէն բազմաքանքար, որ էր ա... կամբք պատուականաւք` և մարգարտաւ յօրի... նեալ, որ անուանեալ կոչէր 'ի նոցունց դեսպակ... փառաց ։

Առաւ և Հրատն` զոր ընդ ինքեան շրջեցուցանէր Թագաւորն հանապազորդ յաւգնականութիւն իւր` որ մեծագոյն համարեալ էր քան զամենայն կրակ, որ կոչէր 'ի նոցունց Աթաշ ։ Հեղձաւ 'ի գետն հանդերձ Մովպետան Մովպետաւ, և այլ բազմութիւն մեծամեծաց աւագաց ։ Յամենայն ժամ աւհրնեալ է Աստուած ։



# ԳԼՈՒԽ Բ.

Ի Քրիստոս հաւատալ և մկրտիլ Անուշ Ըռուանայ' յեպիսկոպոսէն, և ննջումն' թագաւորել Որմզդի. հարկանել Վահրամայ զզօրս Թէտալացւոց. և պատերազմիլ ընդ արքային Մազքթաց, և պարտանել զնա անդ. ապստամբութիւն Վահրամական զօրացն 'ի Խոսրովայ' և փախուստ. գալ Վահրամայ. օգնութիւն խնդրել Խոսրովայ 'ի կայսերէն Մօրկայ.



ԱՅՍ Խոսրով' որ կոչեցաւ Անուշ Ըռուան' 'ի ժամանակս իւրոյ թագաւորութեանն յառաջ քան զապստամբութիւն, զայս հաստատեաց յերկիր, քանզի էր խաղաղասէր և աշխարհաշէն։ Եւ 'ի լինել ապստամբութեան այնորիկ, յայնմ հետէ ընդոստուցեալ զարթեաւ 'ի բարկութիւն' զանձըն անմխաս համարեալ, իբր թէ «Հայր էի ամենայն երկրի, և ոչ տէր»։ Եւ սնուցեալ զամենեսեան իբրև որդի և սիրելի։

Եւ արդ' ասէ, «'ի Նոցանէ խնդրեսցէ Աստուած զարիւնս զայս»։ Այս Խոսրով 'ի ժամանակս իւրոյ թագաւորութեան կալեաց զՊահակն Ճորայ, և Աղուանից. կալաւ ձերբակալ զարքայն Եգերացւոց. և առ մարտիւ զԱնտիոք Պիսիդացւոց, և գերեալ նստոյց առ թագաւորական կայանին։

Շինեաց քաղաք, և անուանեաց զնա Վեհ Անտիոք Խոսրով, զոր անուանեալ Շահաստանին Ոկնոյ կոչեն։ Եւ առ սա զԴարա' և զԿաղանիկոս, գերեաց ասպատակաւ և զկողմանս Ասի-

ղիկէացւոց ։

Կալաւ սա զԹագաւորութիւնն՝ ամս խբ։ Եւ 'ի ժամ վաղճանին ծագեալ փայլակնացեալ զնովաւ լոյս Աստուածային Բանին. քանզի հաւատաց 'ի Քրիստոս՝ ասելով այսպէս, «Հաւատամ 'ի միայն Աստուած, յայն՝ որ արար զերկինս և զերկիր, զոր քրիստոնեայքդ պաշտել խոստավանին՝ Հայր, և Որդի, և Հոգի սուրբ։ Զի նա միայն է Աստուած. և այլ ոչ գոյ բաց 'ի նմանէ զոր քրիստոնեայքն պաշտեն»։

Եւ հրաման տուեալ սպասաւորացն զՄոգպետն արձակել արքունի 'ի հեռագոյն տեղիս 'ի գործ, և զայլսն մերժեալ յարքունական կայենիցն, և կոչեալ զԵպիսկոպոսապետն՝ որ էր անդ Կաթուղիկոս անուանի։

Մկրտեցաւ 'ի նմանէ, և հրամայեաց ժամ առնել 'ի սենեկին, և ընթեռնուլ զՏէրունական Աւետարանին զպատգամս և հաղորդեցաւ 'ի կենդանարար Մարմնոյ և Արեանն Տեառն. և հրաժարեալ 'ի Կաթուղիկոսէն և 'ի Տէրունեան Աւետարանէն, և արձակեն զնա յիւր տեղին։

Եւ ապա զկնի սակաւ ինչ աւուրց ննջեաց 'ի բարւոք ծերութեան իւրում, և բարձեալ զմարմին նորա քրիստոնէիցն՝ տարեալ եդին 'ի շերիմս Թագաւորացն, և Թագաւորէ Որմիզդ որդի նորա յետ նորա։

Եւ արդ՝ այս են զաւրավարք արքային Պարսից՝ որ եկին մի ըստ միոջէ յերկիրս Հայոց՝ յապըստամբութենէ Վարդանայ Մամիկոնէից տն՝ որդւոյն Վասակայ, մինչեւ ցայսօր ժամանակի։ Ոմանք մեռան 'ի պատերազմի. և ոմանք պատե-

րազմեցան. և ոմանք յաղթութիւն գործեցին և գնացին։ Յորժամ սպանին զՍուրեն մարզպան։

Ի նմին ամի եկն Վարդան Վշնասպ ոմն, և գործ ինչ ոչ գործեաց. եկաց ամ մի և գնաց։ Ապա եկն և Գողոնն Միհրան ի. հազարաւ զաւրաց սպառազինաց՝ և փղաւք բազմաւք և ունէր նա ընդ ինքեան սատարս բազումս 'ի ճամբարէ անթիւ ազգացն. ընդ որ բնակեալն են ընդ լեռնակողմամբն Կովկասու ազգք Հոնաց, և հրաման յարքայէն՝ զի անձեռս արասցեն զարս 'ի յաշխարհէն Հայոց՝ խլել՝ բրել՝ յատակել, և անխընայ յերկիր կործանել։

Եւ եկեալ նա, բայց եթէ ուրեք յանմատոյց ամրոցաց ուրեմն մնացեալ ապրեցան մարդիկ։

Եւ կամ թէ՝ ուրեք 'ի հեռաւորն աշխարհս փախստական գնացին։ Բայց սակայն ոչ կարացին բազումք ճողոպրել. քանզի զորս գտանէին, սուր 'ի վերայ եդեալ սատակէին։ Նա արար կռիւ մի 'ի Վիրս, և պարտեցաւ։ Եկն 'ի Հայս, և առ զՆնկղ սուտ երդմամբ։

Փիլիպպոս Սիւնեաց տէր, արար կռիւ մի ընդ քաղաք և ընդ Խաղամախիս. և կռիւ մի 'ի Վանանդ՝ 'ի յՈւթմուս գեղ, և յերկոսեանն պարտեցաւ. եկաց նա ամս է. և գնաց։

Ապա եկն ինքն արքայն Անուշ Րուան Խոսրով որպէս զՎնդոյն կապեալ եդ 'ի դրուանդականի, և Վստամ պրծեալ գնաց փախստական. և ոչ սակաւ ինչ պատերազմունս զարթոյց առ յաւուրսն յայնոսիկ շուրջ զիւրեաւ։

Եւ եղեւ 'ի ժամանակին յայնոսիկ Վահրամ

տին Մնրհեւանդակ իշխան արեւելից կողմանց
աշխարհին Պարսից՝ որ հարկանէր քաջութեամբ
իւրով զզաւրս Թետալացւոց. և բռնութեամբ
ունէր զԲահլ՝ և զամենայն երկիրն Քուշանաց՝
մինչեւ յայնկոյս գետոյն մեծի՝ որ կոչի Վեհռոտ.
և մինչեւ ցտեղին՝ որ կոչի Կազբիոն: Քանզի
զանց արար յայնկոյս Նիզակի քաջին Սպանդիա-
տայ, զորմէ ասեն բարբարոսքն՝ եթէ, « Հա-
եալ նա պատէ բազմաւ մինչեւ ցայս վայր ցըց-
եալ զնիզակ իւր 'ի գետնի »:

Յայնժամ արարեալ Վահրամայն այնորիկ պա-
տերազմն ընդ մեծի արքային Մազքթաց, որ էր 'ի
կողմանս յայնմիկ՝ յայնկոյս գետոյն մեծի, եհար
զբազմութիւն զաւրացն, և սպան զթագաւորն
'ի պատերազմի. և ըմբռնեալ յափշտակեաց զա-
մենայն զգանձ թագաւորութեանն այնորիկ:

Յայնժամ առաքէ առ արքայն Պարսից 'ի ձե-
ռըն հրեշտակաց իւրոց հրովարտակս աւետա-
ւոր, և սուղ ինչ աւարաւն 'ի մեծամեծ գան-
ձուցն հասելոց յաւարէ ապատակին՝ նշանակ
թագաւորութեանն 'ի պատուական իրացն՝ և
զամենայն զգանձն զաւրուն շնորհէ ըստ իւրա-
քանչիւր արժանաւորութեան:

Արդ՝ իբրեւ տեսեալ թագաւորին Որմզդի
զհրեշտակսն եկեալս աւետաւորս, և ընթերց-
եալ զգիրս ողջունին զաւրացն, և ընկալեալ զըն-
ծայսն աւարամասին 'ի պատուական արքունական
գանձուցն:

Թէպէտ և խնդացեալ վեր 'ի վերոյ զմարդ-
կան զմիտս հաճէր, այլ 'ի ներքուստ ցասմամբն
բարբառեալ ասէր, « Ընթրիքն առաւել մեծա-

գոյն և զնշանն 'ի պատուոյս ճանաչեմ, բայց յայնչափ սաստիկ գանձուցն ոչ էր արժան այնչափ հասանել յարքունիս »։

Յայնժամ փոխանակ աւետաւոր հրովարտակին՝ հրամայէ գրել հրովարտակ առաւել ցասմամբ, և արձակէ 'ի գնդէն Համահարզանց՝ և Փուշտիպանացն արքունի, զի երթիցեն առ զաւրըն, և զգանձն զամենայն 'ի միջի արասցեն։ Եւ նոցա երթեալ սկսան պահանջել։

Յայնժամ ընդոստուցեալ զաւրն ամենայն, սպանին զհաւատարիմս արքային, և 'ի բաց կացեալ 'ի ծառայութենէ նորա, զՎահրամ նստուցին թագաւոր իւրեանց. երդումն կնքեցին ըստ աւրինի իւրեանց. միաբանեցան, և դարձան յարևելից, և դիմեցին յԱսորեստան, զի սպանցեն զթագաւորն իւրեանց զՈրմիզդ, և բարձցեն զտունն Սասանական, և հաստատեսցեն ըզ Վահրամ յաթոռ թագաւորութեանն։

Եւ փութանակի ժողովեալ և առեալ գնացեալ զբազմութիւն քաջ և մարտիկ ազգացն Արևելից։ Արդ՝ մինչև ցայս այսպէս շփոթ ամբոխի 'ի մէջ Պարսից աշխարհին լեալ՝ Յովհան Պատրիկ՝ և զաւրք Յունաց պատեալ պաշարեալ պահէին զքաղաքն Դըւնայ՝ մարտուցեալ ընդ նմա մեքենայիւքն՝ մերձ էին 'ի կործանել զպարիսպն։

Իբրև եհաս լուրս այս՝ Թողէն զնա, և գնացին. Ճանապարհ կալեալ Ատրպատական, լաստեցին զերկիրն ամենայն, զայր և զկին բերանով սրոյ իւրեանց, առեալ զամենայն առ և զգերի՝ և զաւար՝ դարձան յերկիրն իւրեանց։

Արդ՝ իբրեւ եհաս լուր աղաղակիս այսորիկ 'ի դուռն Սասանականին՝ առ Որմզդի Թագաւորըն Պարսից, ոչ սակաւ ինչ երկուղք ահի պատեցին զնա։ Եւ կոչեցեալ զնախարարս՝ որ 'ի դրանն արքունի, և զգունդս Ջամահարզանց՝ և զՓուշտիպանացն, և խորհուրդ արարեալ առնուլ զգանձն Թագաւորութեան, և զամենայն ամբոխ դրանն արքունի, և անցանել յայնկոյս գետոյն մեծի Դգլաթայ ընդ Զոմ 'ի Վեհկաւատ, և հատանել զկարսն կամրջացն. և խորհէր իւր ապաւէն առնել զբազմութիւն ամբոխին արքային Տաճկաց։

Իսկ այս ոչ այսպէս պատկանէր. քանզի խորհուրդ արարեալ խորհին արանց և Ջամահարզանց՝ և Փուշտիպանաց արքային, զի սպանցեն զՈրմիզդ՝ և նստուսցեն Թագաւոր զորդի նորա զԽոսրով. խորհուրդ արարեալ լուծանել զնա՝ և առնել իւրեանց առաջնորդ և գործոյն գըլխաւոր։ Եւ գնացեալ 'ի բերդն Դրուանդականի, լուծին զնա՝ և զամենայն կալանաւորսն ընդ նմա, և արձակել զոմն սուրհանդակ հաւատարիմ երագագոյն երիվարաւք, և գրեալ առ Վըռտամ եղբայր, զի սաստիկ ստիպով վաղ հասցէ 'ի տեղի գործոյն. և եկեալ նա փութանակի։

Եւ ժողովեցան ամենայն նախարարք՝ և զաւրագլուխք և զաւրք 'ի դահլիճն արքունի, որ 'ի ժամուն յայնմիկ հանդիպեցան անդ. և մտեալ 'ի սենեակ արքայի՝ կալան զԹագաւորն Որմիզդ, և անդէն վաղվաղակի փորեցին զաչս նորա և ապա սպանին։

Եւ նստուցին զորդի նորա Թագաւոր 'ի վե-

րայ աշխարհին Պարսից. և սկսան առնել պատրաստութիւն փախստեան յայնկոյս գետոյն մեծի Դգլաթայ։ Եւ ո՛չ յետ բազում աւուրց Վահրամն եկն եհաս փութանակի իբրեւ զխոյանալ արծուոյ։

Եւ քանզի մանուկ տղայ էր Խոսրով 'ի թագաւորել իւրում, առին զնա քեռիքն իւր Վնդոյ և Վստամ, և անցին յայնկոյս գետոյն մեծի Դգլաթայ ընդ Զոմ, և հատեալ 'ի բաց զլարսն կամրջացն. և եկեալ Վահրամն էառ զա̃մ զտունն, և զգանձ, և զկանայս արքունի, և նստաւ 'ի գահոյս թագաւորութեան։ Եւ հրամայեաց կապել զլաստս փայտեղէնս, և անց զգետոյն առ 'ի յըմբռնել զԽոսրով. բայց նորա յերկիւղէն ոչինչ կարաց ունել զտեղի։ Իբրեւ անցին գնացին փախստական, և խորհեալ 'ի ճանապարհի, թէ ո՞ր լաւագոյն իցէ՝ երթալ առ արքայն Տաճկաց, եթէ առ թագաւորն Յունաց։

Ապա լաւ համարեցաւ առնել իւրեանց ապաւէն զթագաւորն Յունաց. “Զի թէպէտ և է՝ ասեն, թշնամութիւն 'ի միջի, սակայն քրիստոնեայ են և ողորմած. և յորժամ երդնուն՝ սըտել երդման ոչ կարեն”։ Եւ գնացեալ ընդ արեւմուտս զուղիղ ճանապարհ երթեալ մտին 'ի քաղաքն՝ որ կոչի Խաղաբ. և դադարեցին անդ։

Եւ սա թէպէտ անց զգետոյն, ոչ կարաց հասանել. յետս դարձան անդրէն 'ի Տիզբոն։

Յայնժամ յղէ Խոսրով արքայ առ Թագաւորըն Մաւրիկ արս ճոխս պատարագաւք, և գրէ այսպէս, “Տուր ինձ զգահ և զտեղի թագաւորութեան Հայրց՝ և նախնեաց իմոց, և արձա-

կեամ ինձ զաւր յաւգնութիւն՝ որով կարացից հարկանել զթշնամին իմ. և կանգնեամ զթագաւորութիւն իմ, և եղէց քոյ որդի։ Եւ տաց քեզ զկողմանս զԱսորւոց՝ զԱրուաստանն ամենայն՝ մինչեւ 'ի Մծբին քաղաք։ Եւ յերկրէն Հայոց՝ զաշխարհն Տանուտերական իշխանութեն մինչեւ ցԱրարատ և ցԴուին քաղաք, և մինչև ցեզր ծովուն Բզնունեաց՝ և ցԱռուեստաւան՝ և զմեծ մասն Վրաց աշխարհին՝ մինչեւ ցՏփխիս քաղաք, և կալցուք ուխտ խաղաղութեան 'ի մէջ մեր մինչ ցմահ երկոցունցս, և անշուշտ լիցի այս երդումն 'ի միջի մերում, և 'ի մէջ որդւոց մերոց, որ թագաւորելոց իցեն յետ մեր »։

Արդ՝ ժողովեալ թագաւորին զամենայն Սընկղետոսն, հարցանէր ցնոսա խորհուրդ, և ասէր, « Սպանին պարսիկք զՈրմիզդ զթագաւորն իւրեանց՝ և նստուցին զորդի նորա թագաւոր։ Եւ զաւրք թագաւորութեանն նստուցին զայլ ոմն թագաւոր յԱրեւելս. և եկեալ նա զաւրու մեծաւ յինքն յափշտակեաց զթագաւորութիւնն. և մանուկ որդի նորա փախստական գնացեալ եկըն առ մեզ, և խնդրէ 'ի մէնջ զաւրս յաւգնութիւն, և խոստանայ առնել այսպէս »։

« Արդ՝ զի՞նչ արասցուք, ընդունիմք. արժա՞ն է ընդունել, թէ ոչ »։ Իսկ նոքա ասեն. « Ոչ է արժան ընդունել, զի ազգ մի անաւրէն են՝ և ամենեւին սուտ. 'ի նեղութեան իւրեանց խոստանան առնել, և յորժամ յանդորր ելանեն՝ ուտեն. բազում չարիս կրեալ է մեր 'ի նոցանէ. թող սպառեսցեն զմիմեանս, և մեք հանգիցուք »։

Ընդ թագաւորն Խոսրով կայր 'ի մեծ վտան-

դի, և տեսանէր զմահ առաջի աչաց. զի զերծ-եալ էր 'ի բերանոյ առիւծոյ և անկեալ 'ի բերան Թշնամեաց՝ ուստի փախուստ ոչ գոյր ։

Իսկ Թագաւորն մեժեալ զխորհուրդս Անկ-ղետոսացն, յինքենէ յղէր զՓիկղիպեկոս զփեսայ իւր և տայր տանել պատասխանի ընդունելու-թեանն. առնոյր 'ի նմանէ երդումն, և տայր նը-մա զաւր կայսերական յաւգնականութիւն ընդ Յովհան պատրիկ 'ի Հայոց կողմանէ, և զՆեր-սէս ստրատելատ յԱսորուոց՝ և զզաւրս նոցա ան-ցեալք 'ի հանդիսի, երեք հազար հեծեալ ըստ հարիւրաւորաց, ըստ հազարաւորաց, ըստ դըն-դից. ըստ դրաւշից իւրեանց ։

Արդ՝ վասն զի մայր Շապհոյ դուստր Ասպա-րապետին այնորիկ, *որ էր նախարար Պարթե-ւաց, որք մեռեալ էին՝ քոյր Վնդոյի և Վստա-մայ, և ինքն Վնդոյ էր այր իմաստուն՝ և խոր-հրդական, և սրտիւ արիագոյն՝ որպէս ասացի ։ Եւ արար պատերազմ մի մեծ 'ի Մելիտինէ՝ յո-րում պարտեցաւ և գնաց ։

Ապա եկն Տամ Խոսրով, և արար երկու կը-ռիւս, մի՝ 'ի Բասեան 'ի Բոլորապահակի, ուր Մուրց և Երասխ խառնին ։ Եւ մի՝ 'ի Բագրե-ւանդ 'ի Կըլթնի ։ Եւ յերկոսինն յաղթութիւն գործեաց մեծամեծ ։ Եկաց երկուս ամս՝ և գնաց ։

Ապա եկն Վարազ Վզուրն և արար կռիւ մի 'ի Վանանդ 'ի Ութմսու գեղ՝ որ և նախ վանեցաւ, և ապա յաղթեաց. եկաց ամ մի՝ և

* Ի միւս օրինակին այդպէս, բայց 'ի բնագիրս մեր գրեալ էր « որք մեռեալ էին, եթէ էր նախարար Պարթեւաց »։

գնաց ։

Ապա եկն Պարթեւն մեծ և Պալհաւն, և արար կռիւ մի 'ի Շիրակ աւանին՝ և յաղթեաց՝ եկաց եւթն ամ՝ և գնաց ։

Ապա Հրահատն մարզպան՝ որ գնաց 'ի Արծունին իւրայնոցն սատար 'ի պատերազմ. և անդ նոքա պարտեցան՝ և ապա յաղթութիւն ստացան ։ Եւ անտի դարձեալ՝ արար կռիւ մի 'ի Բզնունիս 'ի Ծաղկաջուրն՝ և յաղթեաց. եկաց չորս ամիս՝ և գնաց ։

Ապա եկն Հարարտին Դատան մարզպան ։ Ապա այնուհետեւ ոչ կարացին պարսիկք պատերազմաւ զդէմ ունել զաւրացն յունաց ։ Նոտովաւ սպանաւ Որմիզդ. և թագաւորեաց որդի նորա Խոսրով ։ Եկաց ամս երկու՝ և գնաց ։

Ապա եկին սահմանակալք Պարսիկք մինչեւ ցըստպառումն խաղաղութեանն՝ որ 'ի մէջ Պարսից և Յունաց. և 'ի մէջ թագաւորացն երկոցունց Մաւրկայ և Խոսրովայ ։

Եւ ապա Վընդատականն ։ Ապա Խորականն ։ Ծսամ սպանին զաւրք պարսից 'ի Գառնի. և ինքեանք ապստամբեալք գնացին 'ի Գեղում ։ Ապա Մերակեռուտն ։ Ապա Յազդէնն ։ Ապա Բուդմահ ։ Ապա Հոյիման ։



# ԾԱՏԵԱՆ ԺԱՄԱՆԱԿԵԱՆ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԱԳԱՒՈՐԱԿԱՆ

Մէգ արիական . վանումն տիեզերական . Հէն Սասանական՝ յԱպրուէզն Խոսրովեան՝ որ հրդեհեալ բոցացոյց զառ 'ի ներքոյս ամենայն՝ դղորդեալ զծով և զցամաք , զարթուցանել զկոր-ծանումն 'ի վերայ ամենայն երկրի ։

Եւ արդ ես ճառեցից զեղելոցն յերկրի , զան-ցից կործանմանն առասպելս վիպասանելով ։ Ո՛զ 'ի վերուստ զարթուցանել սրտմտութիւն , և զառ 'ի ներքոյ բորբոքեալ զբարկութիւն . զհր-լոյն և զարեան հեղեղել . և զհէնիցն արշաւա-նըս . և զմահաբերն տապատակ , զգոչիւն դի-ւաց . և զաղաղակ վիշապաց զազանց քաւդեաց . և զարանց հսկայազանց՝ քաջաց սպառազինաց՝ հեծելոց յարեւելից յարեւմուտս , 'ի հիւսիսոյ 'ի հարաւ ։

Եւ զՀարաւայինն և զարթուցեալ մեծաւ բորբոքմամբ՝ յարձակեալ 'ի վերայ միմեանց , և կատարեալ զհրաման բարկութեան Տեառն 'ի վերայ ամենայն երկրի , որք իբրեւ զմրրիկ աւդոյ թռուցեալ՝ փոթորկեալ՝ ընթացեալ ապականել զառ 'ի ներքոյս ամենայն , աւարել զլերինս՝ և զբլուրս , պատառել զդաշտս վայրաց , և խոր-տակել զվէմս՝ և զքարինս 'ի ներքոյ գարշապա-րաց երիվարաց՝ և յառաթուր սմբակաց ։

Եւ արդ՝ ասացից զվէպս 'ի կործանիչն և յա-պականողն Խոսրով՝ յԱստուծոյ անիծեալն ։

# ԳԼՈՒԽ Գ.

Դիմել Վահրամայ 'ի վերայ Խոսրովայ, և նամակք երկու առ Մուշեղ. և հաւատարմութիւն Մուշեղի առ Խոսրով. պատերազմ մեծ, պարտիլ ապստամբաց. ապերախտութիւն Խոսրովայ առ Մուշեղ. վասն որոյ խորհուրդ Մուշեղի սպանանել զնա՛, և գրել ամբաստանութիւն ընդ իշխանացն Յունաց առ Կայսրն. այնմ անհաճութիւն կայսեր, և թուղթ առ նոսա, և առ Խոսրով. արձակել յունական զաւրաց. կոչել Մուշեղայ 'ի կայսերէն առ պալատն։

---

Եւ եղեւ յետ մահուանն Խոսրովայ որդւոյ Կաւատայ, և թագաւորել որդւոյ նորա Որմզդի 'ի վերայ աշխարհին Պարսից՝ որոյ մայր իւր դուստր է Խաքանայ մեծի արքային Թետալացւոց, կին Խոսրովայ՝ հաւր նորա անուն Կայէն, որ թէպէտ և 'ի հայրենեաց մեծագոյն, եւս առաւել մեծագոյն և գազանագոյն 'ի մայրենեաց կողմանէ։

Քանզի եբարձ սա զամենայն նախարարս՝ և զնախնիս՝ և զտունս բնակագոյնս յաշխարհէն Պարսից։ Սպան սա զՍպարապետն մեծ զՊարթեւն զՊահլաւն՝ որ էր 'ի զաւակէ Անակայ մահապարտի, զոր առեալ դայեկաց 'ի հենէ անտի Խոսրովայ արքայի Հայոց՝ փախուցին 'ի դուռն արքունի իւրեանց՝ 'ի կողմանս Պարսից։

Եւ կատարեաց արքայն 'ի վերայ նորա զպարգեւսն խոստացեալս հաւրն նորա Անակայ, զքուն իսկ զՊարթեւական զՊահլաւն անդրէն փախուցեալ թագ կապեալ մեծարեաց, և արար իւր երկրորդ թագաւորութեանն։

